## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11 ՆՈՅԵՄԲԵՐ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е







# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

## ՍՍՀՄ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՊԱՏՎԻՐԱԿՈՒԹՅԱՆ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու-
թյունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը լիակատար գոհունակություն են ար-
տահայտում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սո-
վետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ ՍՍՀՄ
կուսակցական-կառավարական պատվիրակության Գերմանական Դեմոկրա-
տական Հանրապետություն կատարած (1979 թ. հոկտեմբերի 4—8-ը) պաշ-
տոնական բարեկամական այցի արդյունքների առթիվ:

Սովետական պատվիրակության այցը, որը մասնակցեց ԳԴՀ-ի 30-ամյա-
կի տոնակատարությանը, ակնառու նշանակություն ունեցող իրադարձություն
եղավ ինչպես ՍՄԿԿ-ի ու ԳՍՄԿ-ի, ՍՍՀՄ-ի ու ԳԴՀ-ի փոխգործողության
հետագա ամրապնդման իմաստով, այնպես էլ խաղաղության և միջազգային
անվտանգության կենսական շահերի տեսանկյունից:

ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ Պետական խորհրդի նա-
խագահ Է. Հոնեկերի, ԳԴՀ-ի կուսակցական ու պետական ղեկավարության
հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի, սովետական պատվիրակության անդամների անց-
կացրած բանակցությունների և հանդիպումների ժամանակ կարծիքներ փո-
խանակվեցին երկու երկրների համագործակցության բոլոր կարևորագույն
կողմերի շուրջը, սահմանվեցին տևական հեռանկարով այդ համագործակցու-
թյան կատարելագործման ու խորացման հիմնական ուղղությունները: Տնտե-
սական խոշոր խնդիրների համատեղ լուծման նպատակով երկու երկրների
անտեսական ու գիտատեխնիկական հնարավորությունների միավորումը ար-
դեն արգասավոր մեծ արդյունքներ է տվել: Այդ կարևոր գործին, անկասկած,
նոր խթան կտա մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում ՍՍՀՄ-ի
և ԳԴՀ-ի միջև արտադրության մասնագիտացման ու կոոպերացման ծրագիրը,
որը ստորագրվեց այցի ընթացքում:

Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում սովետական
պատվիրակությանը ցույց տրված բացառիկ սրտագին ընդունելությունը վե-
րածվեց ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի ժողովուրդներին միավորող եղբայրական կապերի
ռնասաանության ցույցի: Ահա արդեն երեք տասնամյակ է, ինչ երկու եղբայ-
րական պետությունների սերտ դաշինքը հուսալիորեն ծառայում է խաղաղու-
թյան և ստեղծարար աշխատանքի նպատակներին: Վստահությամբ կարելի է
ընդգծել, որ այդ դաշինքը այսուհետ ևս կծառայի այդ նպատակներին:

ԳԴՀ-ի 30-ամյակի տոնակատարությունը գերմանական աշխատավորնե-
րի մեծագործությունների տպավորիչ ստուգատեսը դարձավ, որոնք Գերմա-
նիայի սոցիալիստական միասնական կուսակցության ղեկավարությամբ ձեռք

են բերվել հասարակության կյանքի բոլոր բնագավառներում՝ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, էկոնոմիկայի վերելքի, գիտության և կուլտուրայի բարգավաճման, մասսաների բարեկեցության բարձրացման բնագավառներում: Հետևողականորեն վարելով խաղաղության, ժողովուրդների ազատ, անկախ զարգացման իրավունքների պաշտպանության քաղաքականություն, ԳԴՀ-ն նվաճել է միջազգային մեծ հեղինակություն, նրա ձայնը ավելի ու ավելի ծանրակշիռ է հնչում եվրոպական ու համաշխարհային գործերում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը սկզբունքորեն կարևոր են համարում, որ ռազմական լարվածության թուլացման և զինաթափման պրոբլեմների վերաբերյալ Բեռլինում Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի մեջ շարադրված սովետական նոր նախաձեռնությունը արժանացավ ԳԴՀ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս եղբայրական երկրների լիակատար պաշտպանությանը: Այդ նախաձեռնությունը մեծ հետաքրքրությամբ ընդունվեց շատ երկրների ազդեցիկ շրջաններում, ամրապնդեց կայուն խաղաղության հասնելու ժողովուրդների հույսերը:

Դրա հետ մեկտեղ ուշագրավ է այն հանգամանքը, որ ՆԱՏՕ-ի երկրներում, սովետական նախաձեռնության դրական բնույթն ընդունելու հետ մեկտեղ, առաջվա պես մտացածին փաստարկներ են փնտրում, որպեսզի իրականացնեն Արևմտյան Եվրոպայում գործողության միջին շառավիղ ունեցող ամերիկյան նոր հրթիռամիջուկային զենքի տեղաբաշխման վտանգավոր պլանները, այսինքն խախտեն մայրցամաքում հաստատված երկու խմբավորումների ռազմական ուժերի հավասարակշռությունը:

Սովետական նախաձեռնությունը հնարավորություն բացեց՝ կանխելու սպառազինությունների մրցավազքի նոր սլացքը, կանգնելու ռեալ զինաթափման ուղու վրա, պահպանելու և բազմապատկելու լարվածության թուլացման և խաղաղ համագործակցության պտուղները: ԱՄՆ-ից, ԳՖՀ-ից, ՆԱՏՕ-ի մյուս երկրներից է կախված՝ կօգտագործվի՞ արդյոք այդ հնարավորությունը, թե՞ ոչ: Արևմուտքի երկրների ղեկավարները պետք է պատասխանատվության զգացում հանդես բերեն և բարի կամքի ոգով պատասխանեն Սովետական Միության օրինակին: Ժողովուրդները սպասում են դրան:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա, ինչպես Բեռլինում հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը, ամենայն եռանդով ու հաստատակամությամբ կձգտի հասնել այն բանին, որ 80-ական թվականները զերծ լինեն կասկածամտությունից ու վախից, իսկ որ գլխավորն է՝ սպառազինությունների մրցավազքից:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ամբողջովին հավանություն տալով պատվիրակության գործունեությանը, համապատասխան գերատեսչություններին հանձնարարեցին ապահովել այցի ընթացքում ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի միջև ձեռք բերված պայմանավորվածությունների լրիվ իրականացումը:

---

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԳԴՀ-ի կազմավորման 30-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, 1979 թ. հոկտեմբերի 6-ին

*Թանկագին ընկեր Հոնեկե՛ր:*

*Թանկագին բարեկամնե՛ր:*

*Այս տոնական օրերին այստեղ, ձեզ հետ լինելը մեզ համար մեծ ուրախություն է: Մենք ձեզ եղբայրական շնորհավորանքներ ենք բերել Գերմանական Դեմոկրատական Հանրապետության երեսնամյակի առթիվ և ամենալավ բարեմաղթությունները ձեր հավատարիմ բարեկամներից ու դաշնակիցներից՝ տասնյոթ միլիոն սովետական կոմունիստներից՝ Լենինի կուսակցության անդամներից, ողջ սովետական ժողովրդից:*

*Մեր թանկագին բարեկամ, Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար և ԳԴՀ-ի Պետական խորհրդի նախագահ, միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ Էրիխ Հոնեկերին շնորհակալություն եմ հայտնում Սովետական Միության մասին, նրա քաղաքականության մասին ասված բարի խոսքերի համար: Իմ կողմից ուզում եմ շեշտել, որ հանձինս Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կոմունիստների, ԳԴՀ-ի ժողովրդի մենք տեսել ու տեսնում ենք ընդհանուր գործի հուսալի դաշնակիցների, որոնք հավատարիմ են մեր ընդհանուր մեծ իդեալներին, համառ են և հմուտ աշխատանքում, տոկուն են ամեն մի փորձության ժամանակ:*

*Անցած երեք տասնամյակների յուրաքանչյուր տարում ձեր Հանրապետության հետ են եղել Սովետական Միությունը և սոցիալիստական մեծ համագործակցության բոլոր երկրները: Մենք առաջ ենք ընթացել միասին, հավատ և արիություն քաղելով փոխադարձ աջակցությունից, եղբայրական համերաշխությունից:*

*Մեր ընդհանուր անվտանգության և հանուն խաղաղության մեր համատեղ պայքարի հուսալի միջոց է դարձել Վարշավայի պայմանագիրը, որի 25-ամյակը մենք շուտով կնշենք: Լայն ու իրավահավասար տնտեսական համագործակցության լավ ֆորում է դարձել Տնտեսական փոխօգնության խորհուրդը: Բոլոր բնագավառներում մեր փոխգործողության փորձը սոցիալիստական համերաշխության անսպառելի ուժի մի համոզիչ օրինակ է: Եվ մեր ընդհանուր կամքն այն է, որ այդպես լինի այսուհետ ևս:*

*Երեկ ստորագրվեց մեր համագործակցության մի նոր կարևոր փաստաթուղթ՝ ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի միջև արտադրության մասնագիտացման ու կոոպերացման ծրագիրը մինչև 1990 թվականն ընդգրկող ժամկետով: Այդ ծրագրի էությունը, կարճ ասած, հետևյալն է. ամենուրեք, որտեղ դա հնարավոր է ու օգտակար, մենք գումարում ենք միմյանց ռեսուրսներն ու արտադրական հնարավորությունները, որպեսզի ավելի հաջողությամբ լուծենք տնտեսական զարգացման ամենաբարդ պրոբլեմները:*

*Մեր կուսակցությունների, պետական ու հասարակական կազմակերպու-*

*թյունների, ձեռնարկությունների ու գիտահետազոտական կենտրոնների համար սովորական նորմ, եւ նույնիսկ կասեի՝ կենսական պահանջմունք են դարձել մշտական ստեղծագործական կոնտակտները: Սովետական Միության և ձեր հանրապետության հազարավոր ու հազարավոր աշխատավորներ անմիջականորեն ծանոթ են միմյանց, մեր միլիոնավոր մարդիկ սերտ կապեր են պահպանում զանազան կազմակերպությունների շրջանակներում: Սա շատ լավ է, ընկերնե՛ր: Ժողովուրդների բարեկամությունը մեծագո՜ւյն հարստություն է, որը հարկավոր է գնահատել, պահպանել ու բազմապատկել:*

*Հոբելյանական օրերին ավելորդ չէ վերհիշել անցած ուղին: 1949 թվականի աշնանը, երբ կազմավորվեց Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, Եվրոպայում, և ո՛չ միայն Եվրոպայում, քաղաքական իրադրությունը հատկապես լարված էր: Մայրցամաքում մոլեգնում էր «սառը պատերազմի» փոթորիկը: Արդեն ստեղծվել էր ՆԱՏՕ-ի բլոկը՝ իմպերիալիզմի գլխավոր ռազմական գործիքը: Արևմուտքում որոշ քաղաքագետներ սպառնում էին «սառը պատերազմը» վերածել «տաք» պատերազմի: «Պատերազմի եզրին» հավասարակշռությունը հռչակված էր իմպերիալիստական լագերի արտաքին քաղաքականության գրեթե գլխավոր սկզբունքը:*

*Բայց սոցիալիզմի արշալույսը, որը շատ երկրների վրա ճառագեց քառասնական թվականների երկրորդ կեսին, ավելի ու ավելի էր պայծառանում: ԳԴՀ-ի ստեղծումն ու հաստատումը հանդիսացան սոցիալիզմի ու խաղաղության նոր հսկայական հաղթանակը, ունեցան իրոք պատմական նշանակություն:*

*Ավելի ու ավելի է անցյալ դառնում 1945 թվականը, երբ այստեղ՝ Բեռլինում, ավարտվեց մարդկության պատմության ամենաարյունահեղ պատերազմի վերջին գործողությունը: Այժմ Բեռլինը՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության մայրաքաղաքը, բարի համբավ է վայելում: Ժողովուրդները չեն կարող Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցությանը, ԳԴՀ-ի կառավարությանն ու աշխատավորությանը շնորհապարտ չլինել այն բանի համար, որ նրանք կորականապես մերժեցին ֆաշիզմն ու միլիտարիզմը, այն բանի համար, որ արդարացրին հակահիտլերյան ճակատի մարտիկների հույսերը:*

*Յուրաքանչյուր պետության քաղաքականության բովանդակությունը կարելի է հեշտությամբ հասկանալ, պատասխանելով հասարակ հարցերի. ի՞նչ է տալիս այն իր քաղաքացիներին, ի՞նչ է բերում հարևաններին և ամբողջ աշխարհին:*

*Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում, ինչպես և մյուս սոցիալիստական երկրներում, գործնականում խոր հոգատարություն է ցուցաբերվում աշխատավորների բարօրության նկատմամբ, այն բանի նկատմամբ, որ հասարակության յուրաքանչյուր անդամ կարողանա վստահորեն նայել ապագային: Այստեղ պահպանվում և զարգանում են գերմանական բանվորական շարժման լավագույն ավանդույթները, կյանքում մարմնավորվում են գերմանական հեղափոխականների, հումանիստների, մտածողների փայլուն հումանիզմի իդեալները:*

*Հանրապետությունը բարեկամաբար, համագործակցության պատրաստակամությամբ, փոխըմբռնմամբ է վերաբերվում իր հարևաններին: Սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ նա ամեն ինչ անում է, որպեսզի մարդկությունը վերստին չներքաշվի պատերազմի կործանարար հորձանուտը:*

*Այս ամենն արժանի է խորին հարգանքի: Սա է աշխարհում ԳԴՀ-ի մշտապես աճող հեղինակության արմատը:*

*ԳԴՀ-ի միջազգային իրավական ճանաչումն ըստ էության շրջադարձային սահմանագիծ եղավ Եվրոպայի անվտանգության ամրապնդման գործում: Ինչպես գիտեք, դա հեշտությամբ ձեռք չբերվեց: Հանուն այդ ճանաչման, հանուն 70-ական թվականների հայտնի պայմանագրերի կնքման, հանուն հետպատերազմյան իրողությունները հաշվի առնելու, հանուն համաեվրոպական խորհրդակցության անցկացման սոցիալիստական համագործակցության երկրներն ստիպված էին պայքարել տասնամյակներ շարունակ:*

*Համաեվրոպական խորհրդակցությունն ընդունեց Եզրափակիչ ակտ՝ Եվրոպայի ժողովուրդների անվտանգության յուրօրինակ խարտիա, խաղաղ կյանքի, պետությունների խաղաղ հարաբերությունների խարտիա: Մեր ջերմագին փափագն է, որ այդ խարտիան իրականացվի լրիվ ծավալով:*



*Եթե դատելու լինենք ըստ խոսքերի, ապա Արևմուտքի պետական գործիչները եւս, կարծես, այդ են ուզում: Բայց, ցավոք, մեր պարտնյորների գործերը չափազանց հաճախ են այլ ընթացք ունենում: Մենք չենք կարող չտեսնել ռեալ փաստերը. սպառազինությունների մրցավազքի կողմնակիցներն օգտագործում են ամեն մի, նույնիսկ, կարելի է ասել, գոյություն չունեցող, մտացածին պատրվակներ, որպեսզի շիկացնեն իրադրությունը, խթանեն ռազմական պատրաստությունները: Իսկ ինչ վերաբերում է Եվրոպային, ապա այստեղ խաղաղության շենքի տակ, նրա հենց հիմքի տակ ուզում են ական դնել:*

*Լուրջ տագնապ են հարուցում Արևմտյան Եվրոպայի տերիտորիայում ամերիկյան հրթիռամիջուկային զենքի նոր տեսակների տեղաբաշխման վտանգավոր պլանները, որի մասին այժմ արդեն փողհարում է արևմտյան պրոպագանդան: Ուղղակի ասենք. այդ դիտավորությունների իրականացումը էականորեն կփոխեր ստրատեգիական իրադրությունը մայրցամաքում: Դրանց նպատակն է խախտել Եվրոպայում հաստատված ուժերի հավասարակշռությունը, փորձել ռազմական գերազանցություն ապահովել ՆԱՏՕ-ի բլոկի համար:*

*Ինչ վերաբերում է ռազմական գերազանցությանը, ապա, ինչպես ասում են, դա դեռ հարց է: Սոցիալիստական երկրները, իհարկե, անտարբեր չէին նայի նատօյական ռազմամոլների ջանքերին: Այդ դեպքում մենք ստիպված կլինեինք անհրաժեշտ լրացուցիչ քայլեր ձեռնարկել մեր անվտանգությունն ամրապնդելու նպատակով: Մեզ համար ուրիշ ելք չէր մնա: Բայց ահա, մի բան միանգամայն պարզ է. ՆԱՏՕ-ի պլանների իրականացումն անխուսափելիորեն կսրեր իրադրությունը Եվրոպայում և մեծապես կթունավորեր ողջ միջազգային մթնոլորտը:*

*Գաղտնիք չէ, որ այդ վտանգավոր պլանների նախապատրաստման գործում ԱՄՆ-ի հետ միասին ոչ վերջին դերն է հատկացված Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությանը:*

*Անկեղծ ասած, նրանք, ովքեր որոշում են այդ երկրի քաղաքականությունը, այսօր կանգնած են շատ լուրջ ընտրության առջև: Նրանք պետք է վճռեն, թե ԳՖՀ-ի համար ինչն է ավելի լավ. նպաստել Եվրոպայի խաղաղության ամրապնդմանը և եվրոպական պետությունների փոխշահավետ խաղաղ համագործակցության զարգացմանը՝ բարի դրացիության և ամրապնդվող փոխվստահության ոգով, թե՞ նպաստել Եվրոպայում և աշխարհում իրադրության նոր սրմանը, իրենց տերիտորիայում տեղաբաշխելով ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների դեմ ուղղված ամերիկյան հրթիռամիջուկային զենքը: Պարզ է, որ այս՝ երկրորդ, դեպքում զգալիորեն կվատանար նաև հենց ԳՖՀ-ի դրությունը: Դժվար չէ հասկանալ, թե ինչպիսին կլինեին հետևանքները նրա համար, եթե այդ նոր զենքի տերերը երբևէ գործադրեին այն:*

*Ողջ ասվածը, անշուշտ, վերաբերում է նաև ՆԱՏՕ-ի անդամ մյուս եվրոպական երկրներին, որոնց նախատեսվում է «երջանկացնել» նրանց տերիտորիայում գործողության միջին շառավղով ամերիկյան հրթիռամիջուկային զենքի տեղաբաշխմամբ:*

*Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նորից ու նորից կրկնում եմ, որ մենք ռազմական գերազանցության չենք ձգտում: Մենք որևէ պետության կամ պետությունների խմբի սպառնալու մտադրություն երբեք չենք ունեցել և չունենք: Մեր ստրատեգիական դոկտրինան զուտ պաշտպանողական ուղղվածություն ունի: Այն պնդումները, թե Սովետական Միությունը, իբր, Եվրոպայի մայրցամաքում իր ռազմական հզորությունը մեծացնում է պաշտպանության պահանջմունքները գերազանցող մասշտաբներով, իրականության հետ ընդհանուր ոչինչ չունեն: Դա լայն հասարակայնության գիտակցված խաբեություն է:*

*Եվրոպայում, ինչպես և մեր մոլորակի մյուս բոլոր շրջաններում, մենք ուզում ենք խաղաղություն, կայուն խաղաղություն: Դա մեր արտաքին քաղաքականության գլխավոր հիմքն է, նրա ողնաշարը: Այդ քաղաքականությունը մենք վարում ենք հետևողականորեն ու անշեղորեն:*

*Որպես ՍՍՀՄ պաշտպանության խորհրդի նախագահ, ես ամենայն որոշակիությամբ հայտարարում եմ. վերջին տասը տարում Սովետական Միության եվրոպական մասի տերիտորիայում միջին հեռավորության միջուկային զենք կրող միջոցների քանակը չի ավելացվել ոչ մի* նրբիոով, ոչ մի ինքնաթիռով: *Ընդհակառակն, միջին հեռավորության հրթիռների արձակման կայանքների քանակը, ինչպես և այդ հրթիռների միջուկային լիցքերի հզորությունը նույնիսկ* որոշ չափով պակասեցվել է: *Կրճատվել է նաև միջին ռմբակոծիչների քանակը: Իսկ ուրիշ պետությունների տերիտորիաներում Սովետական Միությունն այդպիսի միջոցներ* առհասարակ չի տեղաբաշխում: *Ահա արդեն երկար տարիներ է, ինչ մենք չենք ավելացնում նաև Կենտրոնական Եվրոպայում տեղաբաշխված մեր զորքերի թիվը:*

Ավելին կասեմ: Մենք պատրաստ ենք այժմյան մակարդակի համեմատությամբ կրճատել Սովետական Միության արևմտյան շրջաններում տեղաբաշխված միջին հեռավորության միջուկային միջոցների քանակը, *բայց, իհարկե, միայն այն դեպքում, եթե Արևմտյան Եվրոպայում միջին հեռավորության միջուկային միջոցների լրացուցիչ տեղաբաշխում չկատարվի: Ես նաև ուզում եմ հանդիսավորությամբ հաստատել, որ Սովետական Միությունը երբեք միջուկային զենք չի գործադրի այն պետությունների դեմ, որոնք հրաժարվում են այդպիսի զենքի արտադրությունից ու ձեռք բերելուց և այդպիսին չունեն իրենց տերիտորիայում:*

*Ղեկավարվելով Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման հասնելու բազմամյա ջանքերը փակուղուց դուրս բերելու, խոսքերից իրական գործերի անցնելու օրինակ ցույց տալու անկեղծ ցանկությամբ, ԳԴՀ-ի ղեկավարության հետ համաձայնեցնելով և Վարշավայի պայմանագրի մասնակից մյուս պետությունների հետ կոնսուլտացիաներից հետո,* մենք որոշել ենք միակողմանիորեն կրճատել սովետական զորքերի թիվը Կենտրոնական Եվրոպայում: Հաջորդ 12 ամիսների ընթացքում Գերմանական Դեմոկրատական Հանրապետության տերիտորիայից դուրս կբերվեն մինչև քսան հազար սովետական զինծառայողներ, հազար տանկ, ինչպես նաև որոշակի քանակությամբ ռազմական այլ տեխնիկա:

*Մենք վստահ ենք, որ Սովետական Միության և նրա դաշնակիցների խաղաղասիրության ու բարի կամքի այս նոր կոնկրետ դրսևորումը կարժանանա Եվրոպայի ու ողջ աշխարհի ժողովուրդների հավանությանը: Մենք ՆԱՏՕ-ի երկրների կառավարություններին կոչ ենք անում ինչպես հարկն է գնահատել սոցիալիստական պետությունների նախաձեռնությունը և հետևել մեր բարի օրինակին:*

*Մեր երկիրը հանդես է գալիս Եվրոպայում վստահության միջոցառումների հետագա ընդլայնման օգտին: Մենք, մասնավորապես, պատրաստ ենք համաձայնելու, որ ցամաքային զորքերի խոշոր զորավարժությունների մասին վաղօրոք ծանուցելը, որը նախատեսված է Հելսինկիի եզրափակիչ ակտով, կատարվեր ավելի շուտ և ոչ թե 25 հազար մարդու դեպքում, ինչպես հիմա է, այլ ավելի քիչ, ասենք՝ 20 հազար մարդու դեպքում: Մենք նաև պատրաստ ենք, փոխադարձության հիմունքներով, զորավարժություններ չանկացնել 40—50 հազարից ավելի մարդու մասնակցությամբ:*

*Իհարկե, ուժի մեջ են մնում սոցիալիստական երկրների առաջարկությունները ռազմօդային խոշոր զորավարժությունների և համաեվրոպական խորհրդակցության մասնակից մյուս պետությունների տերիտորիալ ջրերի մոտակայքում անցկացվող ռազմածովային զորախաղերի մասին ծանուցելու վերաբերյալ:*

*Մենք Արևմուտքին ուզում ենք առաջարկել մի բան ևս: Եկեք Հելսինկիի ակտով որոշված շրջանում վաղօրոք ծանուցենք ո՛չ միայն զորավարժությունների մասին, այլև քասն հազարից ավելի մարդուց բաղկացած ցամաքային զորքերի տեղաշարժերի մասին:*

*Կարող են քննարկվել պետությունների միջև վստահության ամրապնդման, Եվրոպայում պատերազմի առաջացման վտանգի նվազեցման նպատակին ուղղված նաև այլ գաղափարներ: Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման միջոցառումների լայն կոմպլեքսի քննարկման համար մենք ամենահարմար տեղը առաջվա պես համարում ենք քաղաքական մակարդակով համաեվրոպական կոնֆերանսը, որի նախապատրաստումն ու գումարումը միանգամայն հրատապ, կարելի է ասել, հասունացած խնդիր է:*



*Ինչպես հայտնի է, նաև կարևոր բանակցություններ են վարվելու ՍՍՍ—3 պայմանագրի շուրջը: Մենք կողմնակից ենք այն բանին, որ դրանք սկսվեն ՍՍՍ—2 պայմանագիրը ուժի մեջ մտնելուն պես: Այդ բանակցությունների շրջանակներում մենք պատրաստ ենք քննարկելու ո՛չ միայն միջմայրցամաքային ստրատեգիաների, այլև զենքի մյուս տեսակների սահմանափակման հնարավորությունները, իհարկե հաշվի առնելով դրան վերաբերող բոլոր գործոնները և խստիվ պահպանելով կողմերի հավասար անվտանգության սկզբունքը:*

*Այսպիսով, ՍՍՀՄ-ը, ԳԴՀ-ն և Եվրոպայի մյուս սոցիալիստական երկրներն առաջարկում են պարզորոշ հեռանկար— եվրոպական բոլոր ժողովուրդների համար ռեալ կերպով ապահովել անվտանգության ու խաղաղության պայմաններում ապրելու հնարավորություն: Խոսքն այժմ արևմտյան երկրներինն է: Նրանց պատասխանը ցույց կտա, թե արդյոք իրենք պատրա՞ստ են հաշվի առնելու ժողովուրդների կամքն ու կենսական շահերը: Մենք հուսով ենք, որ ռեալիզմը, պետական իմաստությունը և, ի վերջո, պարզապես ողջախոհությունը կհաղթանակեն:*

*Թանկագին ընկերնե՛ր:*

*Այսօրվա փոթորկուն աշխարհում մենք՝ սոցիալիստական համագործակցության երկրներս, հուսալի հող ունենք մեր ոտքի տակ: Այն ինքներս ենք ստեղծել, ապահովելով մեր էկոնոմիկաների անշեղ առաջընթացը, զարգացնելով սոցիալիստական դեմոկրատիան, ապահովելով մեր ժողովուրդների բարեկեցության մշտական աճը, ընդհանուր ջանքերով ամրապնդելով մեր պաշտպանությունը: Մեր կապերը խորն են և բազմազան, և մենք սովորում ենք համագործակցել ավելի ու ավելի լավ:*

*Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը քաղաքական ու բարոյական այն ուժն է, որ մեզ հնարավորություն է տվել բազում հաղթանակների հասնելու խաղաղության ու սոցիալական պրոգրեսի համար մղած պայքարում:*

*Եվ անչափ լավ է, որ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության մեծ տոնը տեղի է ունենում իսկական ինտերնացիոնալիզմի մթնոլորտում:*

*Կեցցե՜ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը՝ Եվրոպայում խաղաղության և սոցիալիզմի հուսալի ամրոցը:*

*Թո՛ղ մշտապես ամրապնդվի Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, մեր մարքս-լենինյան կուսակցությունների անխախտ բարեկամությունը:*

*Կեցցե՜ սոցիալիստական պետությունների փառապանծ համագործակցությունը:*

*Կեցցե՜ խաղաղությունն ու կոմունիզմը:*

(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով):

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի մասին

Հոկտեմբերի 23-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման և «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Գ. Ն. Անդրեևը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, հանրապետության պետպլանի նախագահ ընկ. Հ. Ս. Սաղոյանը, աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հ. Մուրադյանը, կուսակցության Երևանի Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Լ. Մանդալյանը, ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Լ. Գ. Սահակյանը, կուսակցության Կիրովականի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ա. Խ. Բաղյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչության պետ ընկ. Հ. Օ. Ղամբարյանը, կուսակցության Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Կ. Հարությունյանը, Լենինականի տեքստիլ կոմբինատի բանվորուհի ընկ. Մ. Հ. Հովհաննիսյանը, Քանաքեռի ալյումինի գործարանի դիրեկտոր ընկ. Լ. Է. Ղազարյանը, ՍՍՀՄ պետպլանին առընթեր պլանավորման և նորմատիվների գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղի դիրեկտոր ընկ. Հ. Ե. Խաչատրյանը:

Քննարկված հարցի վերաբերյալ պլենումն ընդունեց որոշում:

Պլենումը լսեց «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման ընթացքի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի ինֆորմացիան, որով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Լ. Դալլաքյանը:

Այդ հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Պ. Գրոմիկոն:

---

# ԱՄԲՈՂՋ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ

## Ընկեր Մ. Ա. Սուսլովի զեկուցումը գաղափարական աշխատողների համամիութենական խորհրդակցությունում, 1979 թ. հոկտեմբերի 16-ին

Ընկերնե՛ր:

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ընդունումից հետո անցել է գրեթե վեց ամիս: Այդ ժամանակամիջոցում բոլոր հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի կուսակցական կազմակերպություններում, սովետական ու պետական մարմիններում, գաղափարախոսական հիմնարկներում տեղի են ունեցել կուսակցական ժողովներ, պլենումներ ու ակտիվներ, որտեղ կոմունիստները ուշադրությամբ և շահագրգռված կերպով քննարկել են կուսակցական այդ կարևորագույն փաստաթղթերի դրույթներն ու հանձնարարականները:

Սովետական քաղաքացիներից Կենտրոնական կոմիտեում ստացվող բազմաթիվ նամակները վկայում են, որ բանվորները, կոլտնտեսականներն ու ծառայողները, տնտեսական աշխատողները, գրականության ու արվեստի գործիչները, գիտնականները, ժուռնալիստները՝ ամենատարբեր մասնագիտությունների մարդիկ այդ որոշման մեջ տեսնում են անմիջականորեն իրենց ուղղված դիմում, դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման՝ կյանքի առաջադրած հարցերի հստակ պատասխանը:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը խոշոր իրադարձություն եղավ կուսակցության, ամբողջ ժողովրդի գաղափարաքաղաքական կյանքում: Այդ որոշումը ընդհանրացնում է կուսակցության գաղափարադաստիարակչական գործունեության պրակտիկան առանձնապես ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների ուղենիշներով նշված տարիներին: Որոշման մեջ խորապես վերլուծված են արդի փուլում գաղափարախոսական աշխատանքի տարբեր կողմերի հետ առնչվող պրոբլեմները, նշված են դրա թե՛ ուժեղ կողմերը, և թե էական թերությունները: Ընդսմին, անհրաժեշտ է ընդգծել ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված համապատասխան ցուցումների հատուկ կարևորությունը: Որոշման բնույթը պայմանավորված է սովետական հասարակության զարգացման ներկա փուլի կենսական պահանջմունքներով, համաշխարհային երկու սիստեմների հակամարտության առանձնահատկություններով, ինչպես նաև այն դերով, որ օբյեկտիվորեն հատկացված է ներկա պայմաններում կուսակցության գաղափարախոսական գործունեությանը:

Մեր խորհրդակցությունում, որը հրավիրվել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ, նկատի է առնվում քննարկել որոշման կատարման ընթացքը և նրա մեջ առաջադրված խնդիրների արդյունավետ իրականացման ուղիները: Դա կարևոր է մանավանդ նրա համար, որ որոշումը տևական բնույթ է կրում

և իրենից ներկայացնում է գործողությունների ծավալուն ծրագիր գաղափարադաստիարակչական աշխատանքի բնագավառում:

## I.

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ-ի՝ որպես գիտական կոմունիզմի կուսակցության, գլխավոր առանձնահատկությունը մարքսիզմ-լենինիզմի տեսության օրգանական զուգակցումն է բանվոր դասակարգի հեղափոխական պրակտիկայի հետ, ժողովրդական զանգվածների պատմական ստեղծագործության հետ: Նոր հասարակության ստեղծման համար մղվող պայքարի բոլոր փուլերում մեր լենինյան կուսակցությունը անշեղորեն հետևում է մարքսիստական սկզբունքին՝ ոչ միայն բացատրել աշխարհը, այլև փոխել այն:

Դեպի կոմունիստական ապագա մեր հասարակության առաջընթացի ղեկավարումը կուսակցությունն իրականացնում է հասարակական զարգացման օրենքների գիտական խոր ճանաչման, անցած ուղու, առկա իրադրության, հասարակական-քաղաքական կյանքի առաջատար միտումների մանրակրկիտ վերլուծության հիման վրա: Լրացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումի 15 տարին, որը պատմական ուղենիշ դարձավ մեր կուսակցության կյանքում: Պլենումը շատ կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ-ի ղեկավար և ուղղություն տվող դերի ամրապնդման, կուսակցական կյանքի լենինյան նորմերի և սկզբունքների, ղեկավարման կոլեկտիվայնության սկզբունքի հաստատման, կադրերի նկատմամբ հարգանքի և վստահության մթնոլորտի ստեղծման, աշխատանքի իրոք ստեղծագործական ոճի արմատավորման համար: Պլենումի որոշումները աչքի ընկնող դեր խաղացին զարգացած սոցիալիզմի պայմաններում կուսակցության քաղաքական կուրսի մշակման գործում: Այդ կուրսի հետևողական իրականացումը նշանավորվեց կուսակցության ու ժողովրդի հիանալի նվաճումներով:

Նոր սոցիալական փորձի բազմակողմանի հաշվառումը, հասարակության նյութական ու հոգևոր առաջադիմության կենսական պահանջմունքների մանրակրկիտ վերլուծությունը գաղափարատեսական ու գործնական այն մեծ աշխատանքի հիմքն են, որ անդուլ կերպով կատարում են կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն՝ մեծ Լենինի գործի հավատարիմ շարունակող, մեր կուսակցության, սովետական պետության, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ, խաղաղության անխոնջ մարտիկ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ: ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների պատմական որոշումներում իրենց վառ արտահայտությունը գտան կուսակցության կոլեկտիվ մտքի ուժը, նրա սոցիալ-տնտեսական և քաղաքական ստրատեգիայի գիտական հիմնավորվածությունը: Մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին հավատարմությունը, տեսական հզորությունը, ինչպես նաև հսկայական փորձը մեր կուսակցությունը զինում են գիտական կանխատեսման բացառիկ ունակությամբ: Դա հաստատվում է ժամանակակից պատմական զարգացման ամբողջ ընթացքով:

«Իրենց բնույթով տարբեր փուլերը՝ խստորեն զանազանելու, նրանց անցկացման պայմանները զգաստ կերպով հետազոտելու» անհրաժեշտության մասին լենինյան ցուցումը կուսակցությունը դիտում է որպես այն խնդիրների սահմանման համար պարտադիր մեթոդաբանական հիմք, որ պետք է լուծի հասարակությունը հասարակական առաջադիմության յուրաքանչյուր նոր փուլում:

Էկոնոմիկայի, սոցիալական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի, կուլտուրայի զարգացման, կոմունիստական դաստիարակության արմատական պրոբլեմների լուծումը մեր լենինյան կուսակցությունը կարող է իրականացնել միայն դրանց խորապես գիտական իմաստավորման հիման վրա: Դա պայմանավորված է նրանով, որ մեր երկրին, մեր հերոս ժողովրդին պատմական առաքելություն է վիճակվել առաջ ընթանալու անծանոթ ուղիներով, լուծելու հասուն սոցիալիզմի հետագա զարգացման հետ կապված սկզբունքորեն նոր և բազմապիսի խնդիրներ:

Հեղափոխական տեսության և պրակտիկայի հորիզոններն ընդլայնող տեսական մտքի ակնառու նվաճում եղավ զարգացած սոցիալիզմի՝ որպես կոմունիստական



ֆորմացիայի կազմավորման, նրա բարձրագույն փուլին անցնելու տևական, պատմականորեն անհրաժեշտ էտապի մասին ուսմունքը: Կուսակցական համագումարների նյութերում, Կենտկոմի պլենումների որոշումներում, կուսակցական մյուս փաստաթղթերում բազմակողմանի հիմնավորում գտած այդ ուսմունքի հետ անմիջականորեն կապված են ՍՄԿԿ-ի տեսական ու պրակտիկ գործունեության կարևորագույն շատ ուղղություններ:

Զարգացած սոցիալիզմի փուլում մեր կարգերի ստեղծարար հնարավորությունները, նրանց իրոք մարդասիրական էությունը բացահայտվում են հարաճուն չափով: Դա իր արտացոլումը գտավ ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ: Սահմանադրության ընդունումը ոչ միայն հասուն սոցիալիզմի նվաճումների վավերագրման պատմական ակտ է, կոմունիստական շինարարության պրակտիկայի ստեղծագործական ընդհանրացում, այլև հզոր խթան հասարակական-քաղաքական հարաբերությունների ամբողջ սիստեմի հետագա կատարելագործման համար: Երկրում սոցիալ-տնտեսական ու քաղաքական պրոցեսների կառավարման ուղղությամբ կուսակցության բեղմնավոր գործունեությունը, ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի ակտիվացումը, պետության գործերին քաղաքացիների ավելի ու ավելի լայն ու անմիջական մասնակցությունը՝ այս ամենը նպատակամղված է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա հետևողական զարգացմանը և սովետական պետականության ամրապնդմանը:

Այսօր մենք հասել ենք էկոնոմիկայի և սոցիալական հարաբերությունների զարգացման այնպիսի մակարդակի, սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնության այնպիսի աստիճանի, երբ ամուր հիմք է ստեղծված երկրի նյութական ու հոգևոր ուժերի նոր հզոր վերելքի համար: Այդ հիման վրա է կուսակցությունը լուծում բարդ, խոշոր մասշտաբի խնդիրները, առաջին հերթին՝ էկոնոմիկայի և դաստիարակության բնագավառում: Հասարակության կենսագործունեության այդ երկու կարևորագույն ոլորտներում ձեռք բերված հաջողությունները օրգանապես փոխպայմանավորված են: Հենց դրա համար էլ Կենտրոնական կոմիտեն այս տարվա ապրիլին ու հուլիսին հաջորդաբար ընդունեց երկու որոշում՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» և «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին»: Ընդունվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը՝ պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին:

Վերջերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընկ. Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ընդունեց նոր կարևոր որոշումներ երկրի արտադրողական ուժերի զարգացման արմատական հարցերի վերաբերյալ: Արտադրության արդյունավետությունը կայուն կերպով բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է համարված ապահովել էներգետիկայի առավել արագ զարգացումը, առաջ մղել տնտեսության կենսականորեն կարևոր այնպիսի օղակներ, ինչպիսիք են տրանսպորտը, վառելիքի արդյունաբերությունը, սև ու գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, քիմիան: Ընդ որում, անփոփոխ է մնում գյուղատնտեսության հետագա վերելքի կուսակցության կուրսը:

Այսօրվա համար առանձնապես հրատապ այդ պրոբլեմների լուծումը կոչնի՝ լրիվ մոբիլիզացնելու բոլոր առկա ռեսուրսները, հասնելու ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության՝ էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, երկրի բոլոր շրջանների ներդաշնակ, կոմպլեքսային զարգացումն ապահովելու համար, նախ և առաջ ինտենսիվ, որակական գործոնների հիման վրա: Դա թույլ կտա ընդլայնել լայն սպառման ապրանքների արտադրությունը և ապահովել սովետական մարդկանց նյութական բարեկեցության հետագա բարձրացումը:

Այսպիսով, կուսակցության վերջին որոշումները գործում են կոմպլեքսայնորեն, փոխադարձաբար կապակցված: Դրանց կատարումը պետք է ապահովի սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերի առավել լրիվ բացահայտումը, աշխատավորների ավելի ու ավելի լայն ու շահագրգռված մասնակցությունը

հասարակության գործերին, նրանց ստեղծարար աշխատանքի արդյունավետության զգալի բարձրացումը: Չափազանց կարևոր է խորապես, փաստարկված կերպով պարզաբանել ՍՄԿԿ-ի քաղաքականությունը, կուսակցության ընդունած որոշումները, ժողովրդական զանգվածներին մոբիլիզացնելով և ոգեշնչելով տասներորդ հնգամյակի հաջող ավարտմանը և գալիք՝ տասնմեկերորդ հնգամյակի համար նպաստավոր պայմանների ստեղծմանը:

Ընկերնե՛ր: Կուսակցությունն իր գործունեության մեջ հաշվի է առնում ՍՍՀՄ ներքին ու արտաքին քաղաքականության փոխադարձ սերտ կապը: Կյանքը համոզիչ կերպով հաստատել է համաշխարհային հեղափոխական պրոցեսի, ամբողջ միջազգային զարգացման այն գիտական վերլուծության ճշտությունը, որն արվեց ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում: Հենվելով մարքս-լենինյան տեսության, իրենց քաղաքական փորձի վրա, մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ուշադրությամբ հետևում են իրադարձությունների զարգացմանը, խորապես վերլուծում են կատարվող փոփոխությունները և բարդ, հակասական արտաքին քաղաքական իրադրության մեջ հետևողականորեն իրականացնում իրենց սկզբունքային կուրսը համաշխարհային ասպարեզում:

Մեր արտաքին քաղաքականության կարևորագույն խնդիրը եղել և մնում է համաշխարհային սոցիալիստական համագործակցության համախմբվածության ամրապնդումը:

Տարեցտարի ամրապնդվում են սոցիալիստական երկրների եղբայրական բարեկամությունն ու համագործակցությունը: Նրանց փոխադարձ կապերի ամրապնդումը, ընդհանուր տնտեսական հզորության աճը, որն անշեղորեն բազմապատկվում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հիման վրա, միևնույն ժամանակ տանում են դեպի յուրաքանչյուր ժողովրդի էկոնոմիկայի և կուլտուրայի բարգավաճում, դեպի բոլոր սոցիալիստական պետությունների սուվերենության ամրապնդում:

Եղբայրական երկրների քաղաքականության բնագավառում, էկոնոմիկայում և հոգևոր կյանքում ընդհանրության ուժեղացման մասին XXV համագումարի հետևությունը հաստատվում է հասարակական զարգացման ամբողջ ընթացքով: Այդ ընդհանրությունը դրսևորվում է նաև գաղափարախոսական աշխատանքի արմատական խնդիրների նմանության մեջ: Դրա ակնբախ ապացույցը այն ջերմ ու շահագրգռված վերաբերմունքն է, որին արժանացավ գաղափարախոսական աշխատանքի մասին Կենտկոմի որոշումը սոցիալիստական համագործակցության երկրների կուսակցություններում: Գաղափարախոսական համագործակցության հետագա ընդլայնման ուղղությամբ նոր, օգտակար քայլեր արեց սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կենտրոնական կոմիտեների միջազգային ու գաղափարախոսական հարցերով զբաղվող քարտուղարների խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ այս տարվա հուլիսին:

Սոցիալիզմի պատմական գերազանցությունը, նրա անվիճելի հաջողությունները մեծացնում են մեր գաղափարների, սոցիալիստական պետությունների համաձայնեցված արտաքին քաղաքականության ձգողական ուժը: Այսօր ամբողջ առաջադեմ մարդկությունը լավ հասկանում է, որ Սովետական Միությունը, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրները խաղաղության գլխավոր պատվարն են, միջազգային լարվածությունը թուլացնելու կուրսի անխոնջ իրականացնողը:

Լարվածության թուլացումն ըստ էության միջազգային հարաբերությունների պրակտիկայում խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների արմատավորումն է: Այդ սկզբունքների միջազգային ճանաչումը, այդ թվում արևմտյան խոշորագույն տերությունների կառավարությունների կողմից, որպես տարբեր հասարակական կարգեր ունեցող պետությունների փոխհարաբերությունների հիմք, պատմական նվաճում է, համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխման վկայություն: Այն, որ մարդկությունը արդեն չորրորդ տասնամյակն է, ինչ զերծ է համաշխարհային պատերազմից,



սոցիալիզմի մեծագույն ծառայությունն է, մոլորակի բոլոր խաղաղասեր ուժերի հաջողությունը:

Միջուկային պատերազմի սպառնալիքի վերացման և սպառազինությունների մրցավազքի դադարեցման ասպարեզում կարևոր քայլ եղավ ընկեր Լ. Ի. Բրեժնևի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերի կողմից ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ սովետաամերիկյան երկրորդ պայմանագրի ստորագրումը: Կողմերի հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքով կառուցված ՍՍՍ—2 պայմանագրի ուժի մեջ մտնելն ուղի կհարթի ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման ու կրճատման նոր միջոցառումներ մշակելու համար, ինչպես նաև կօգնի հաջողության հասնելու սպառազինությունների սահմանափակման ու զինաթափման մյուս ուղղություններում:

Ընդհանուր խաղաղության և առաջին հերթին Եվրոպայի ժողովուրդների անվտանգության ամրապնդման համար մեծ նշանակություն ունեն ԳԴՀ-ի 30-ամյակի առթիվ Բեռլինում արտասանած ճառում ընկ. Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթները: Հավաստելով ՍՄԿԿ-ի և սովետական պետության լենինյան կուրսի անսասանությունն ու հետևողականությունը, նա արդարացիորեն քննադատեց սպառազինությունների մրցավազքի նոր փուլ սկսելու և Սովետական Միության ու Վարշավայի պայմանագրի գծով նրա դաշնակիցների նկատմամբ ստրատեգիական գերազանցության հասնելու ՆԱՏՕ-ի վերնախավի փորձերը: Ամբողջ աշխարհի առջև մերկացվեցին ՆԱՏՕ-ի այն չարագույժ պլանները, որոնց նպատակն է Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխել գործողության միջին շառավիղ ունեցող ամերիկյան նոր հրթիռներ և այն դարձնել Սովետական Միության դեմ ուղղված միջուկային զենքի արձակման հրապարակ:

Ի հակադրություն այդ պլանների, ինչպես հայտարարվեց Բեռլինում, Սովետական Միությունը որոշել է կրճատել Կենտրոնական Եվրոպայում իր զինված ուժերի թվակազմն ու սպառազինությունների քանակը:

Սովետական նոր նախաձեռնությունը աշխարհում խաղաղություն հաստատելու, եվրոպական մայրցամաքի երկրների միջև վստահություն ամրապնդելու մեր երկրի անկեղծ ձգտման մի նոր անվիճելի ապացույց է: Բնականաբար, մենք իրավունք ունենք ակնկալելու, որ արևմտաեվրոպական պետությունները խաղաղության շահերին համապատասխանող հետևություններ կանեն ՍՍՀՄ-ի կոնստրուկտիվ գործողություններից:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթներին միջազգային առաջադեմ հասարակայնության միահամուռ աջակցությունը ՍՄԿԿ-ի ու սովետական պետության խաղաղասիրական քաղաքականության արդար ու կոնստրուկտիվ բնույթի, լարվածության հետագա թուլացման, աշխարհի խաղաղության ամրապնդման հասնելու մոլորակի բոլոր ազնիվ մարդկանց վճռականության համոզիչ վկայությունն է:

Լարվածության թուլացումը, խաղաղության և միջազգային անվտանգության գործի հաջողությունները ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծում ժողովուրդների ազգային ազատագրության և սոցիալական առաջընթացի պայքարի հետագա զարգացման համար: Նրանցից շատերը, թոթափելով գաղութատիրության և հետադիմական բռնակալական վարչակարգերի լուծը, բռնում են սոցիալիստական կողմնորոշման ուղին:

Իհարկե, ժողովուրդների պայքարի ուղին դժվարին է, և այդ պայքարը մղվում է բարդ, հակասական պայմաններում: Չի կարելի հաշվի չառնել նաև իմպերիալիստական հետադեմ ուժերի փորձերը՝ պառակտելու ազգային ազատագրության ուժերը, չմիանալու շարժումը, որը դարձել է համաշխարհային քաղաքականության ազդեցիկ գործոն:

Ընդհանուր առմամբ միջազգային իրադրությունը այնպես է դասավորվում, որ սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդները, ազգային-ազատագրական շարժումը, բոլոր խաղաղասեր ուժերը դեռ պետք է շատ ջանքեր գործադրեն խաղաղ զարգացման հակառակորդների, այդ թվում ԱՄՆ-ի ռազմարդյունաբերական կոմպլեքսի ուժեղ դիմադրությունը հաղթահարելու համար: Այդ ջանքերի նպատակն է լարվածության թուլացման հետագա

նյութականացումը և առաջին հերթին սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, միջազգային կյանքի նոր բնագավառների, երկրագնդի բոլոր շրջանների վրա լարվածության թուլացման տարածումը:

Այդ նպատակների համար մղվող պայքարում լուրջ խոչընդոտ է նաև Պեկինի քաղաքականությունը, որը հանդես է գալիս իմպերիալիստական հետադեմ ու ռազմատենչ ուժերի հետ համատեղ: Մենք վճռականապես դատապարտում ենք մաոիզմի մեծապետական, հեգեմոնիստական գաղափարախոսությունն ու քաղաքականությունը, որոնք խորապես թշնամական են մարքսիզմ-լենինիզմին, սոցիալիզմի շահերին, ժողովուրդների խաղաղության և ազատագրության գործին: Դրա հետ մեկտեղ մենք հնարավոր ամեն ինչ անում ենք խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա ՉԺՀ-ի հետ միջպետական հարաբերությունները նորմալացնելու համար: Այդ հարցում ամեն ինչ կախված է անցկացվող բանակցություններում զգաստ, կոնստրուկտիվ մոտեցում դրսևորելու չինական կողմի պատրաստակամությունից:

Մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին հավատարմությունը, յուրաքանչյուր երկրի կոնկրետ պայմանների համեմատ ստրատեգիայի ու տակտիկայի մշակման համար դրանց ստեղծագործական կիրառումը ամեն մի իրոք հեղափոխական կուսակցության և միջազգային ամբողջ կոմունիստական շարժման գործունեության հաջողությունների հուսալի գրավականն են:

Մեր ժամանակներում, ինչպես երբեք, մեծ է Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքի հեղինակությունը, մեծ է նրա գաղափարական ներգործության հզորությունը, ռեալ սոցիալիզմի օրինակի ուժը: Դա սարսափեցնում է մեր դասակարգային հակառակորդին: Ուստի նա կատաղի հարձակումներ է գործում մարքսիզմ-լենինիզմի հասցեին: Հետևաբար և զգալիորեն աշխուժացել են մարքսիզմ-լենինիզմի բուրժուական ու մանրբուրժուական ամեն տեսակ կեղծարարները, երևան են եկել մարքսիզմի նորանոր, ավելի ու ավելի խորամանկ ռևիզիոնիստական ու ռեֆորմիստական մեկնաբանություններ: Դրանք բոլորը վերջին հաշվով նպատակ ունեն վարկաբեկել ռեալ սոցիալիզմի փորձն ու նվաճումները, խարխլել ու պառակտել համաշխարհային կոմունիստական շարժումը:

Մեր կուսակցությունը հետևողականորեն հանդես է գալիս մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա միջազգային կոմունիստական, բանվորական շարժման համախմբվածության ամրապնդման օգտին: Մենք ուրախանում ենք բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերի համար, մոնոպոլիաների և իմպերիալիստական ռեակցիայի միահեծան իշխանության դեմ մղվող պայքարում եղբայրական կուսակցությունների ձեռք բերած հաջողություններով:

Բոլոր երկրների կոմունիստները՝ ամենամարդասիրական, կենսահաստատ աշխարհայացքի կրողները, իրենց պարտքն են համարում առաջավոր հեղափոխական տեսությամբ զինված պայքարել դասակարգային հակառակորդների դեմ, վճռական հակահարված տալ հակակոմունիզմին, բոլոր մայրցամաքների, մոլորակի բոլոր անկյունների նորանոր միլիոնավոր մարդկանց գրավել սոցիալիզմի կողմը, ներգրավել խաղաղության և սոցիալական առաջընթացի համար մարտնչողների շարքերը:

Մենք մեր գաղափարախոսական աշխատանքում պետք է հաշվի առնենք, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, որ «համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություններ են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար: Բայց, մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ էլ ավելի խորամանկ»: Մեր գաղափարախոսական աշխատողներից պահանջվում է հասարակական զարգացման արդի պրոբլեմների ստեղծագործական մշակման հիման վրա ուժեղացնել պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ, աջ և «ձախ» օպորտունիզմի դրսևորումների դեմ:

Խաղաղության, սոցիալական առաջընթացի համար մղվող հաստատակամ, հետևողական պայքարում, ինչպես մեր հասարակության տնտեսական և սո-



ցիալ-քաղաքական զարգացման վիթխարի խնդիրների լուծման գործում, ավելի ու ավելի լրիվ ու վառ կերպով է դրսևորվում մարքսիզմ-լենինիզմի՝ ՍՄԿԿ-ի հեղափոխական վերափոխիչ ամբողջ գործունեության տեսական հիմքի, ստեղծագործական հզոր ուժը:

## II.

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ-ն ելել է ու ելնում է այն բանից, որ նոր մարդու ձևավորումը կոմունիստական ամբողջ ստեղծարար աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասն է: Նոր մարդու՝ որպես ստեղծագործող, հոգեպես հարուստ, ներդաշնակորեն զարգացած անհատի դաստիարակությունը մեր ծրագրային նպատակն է:

Պրակտիկան ցույց է տալիս, որ մեծ, ստրատեգիական նպատակի իրականացումը երբեք տեղի չի ունենում դեպի այդ նպատակը տանող ընթացիկ խնդիրների լուծումից անջատ: Նոր մարդու ձևավորումը շատ սերտորեն կապված է տնտեսական, սոցիալական ու քաղաքական պրոբլեմների ողջ կոմպլեքսի հետ: Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, գաղափարական հասունության բարձր մակարդակի, սովորեցնում է կուսակցությունը, կոմունիզմն անհնար է, ինչպես որ այն անհնար է նաև առանց համապատասխան նյութատեխնիկական բազայի: Իսկ դա նշանակում է, որ նոր մարդու ձևավորումը ոչ միայն նոր հասարակության կառուցման արդյունքն է, այլև կարևորագույն պայմանը:

Կուսակցությունը ելնում է լենինյան այն հայտնի դրույթներից, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, պետությունը ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել, ամեն ինչի գնում են գիտակցաբար: Մասսաների գիտակցության ու ակտիվության անշեղ բարձրացման նկատմամբ հոգատարությունը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, մնում է կուսակցական աշխատանքի հիմքն ու գլխավոր բովանդակությունը: Ուստի գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավումը Կենտկոմի որոշման մեջ դիտվում է համակուսակցական կարևորագույն գործ, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական բոլոր կազմակերպությունների անդուլ հոգատարության առարկան:

Մեր գաղափարախոսական ամբողջ աշխատանքի գլխավոր առանձնահատկությունը, նրա ներգործունության, կենսական ուժի և արդյունավետության աղբյուրը նրա գիտականությունն է: Տեսության նկատմամբ խոր հետաքրքրությունը, նրա զարգացման նկատմամբ ըստ ամենայնի հոգատարությունը փառավոր հեղափոխական ավանդույթ է, մեր կուսակցության կյանքի անսասան օրենքը:

Այսօր, ինչպես երբեք, հրատապ խնդիր է, որ կուսակցական կադրերը, բոլոր կոմունիստները, ինչպես նաև աշխատավորության ավելի ու ավելի լայն շրջանները անմիջականորեն դիմեն Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատություններին, որոնցում դրված են մեր հեղափոխական գիտության նախահիմքերը: Խոսքը վերաբերում է, կկամենայի շեշտել այդ բանը, դրանց խոր, ամբողջական ուսումնասիրմանը և պրոպագանդմանը, այլ ոչ թե մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների առանձին դրույթներին թռուցիկ ու մակերեսորեն ծանոթանալուն: Անհրաժեշտ է խորաքնին ուսումնասիրել ՍՄԿԿ-ի պատմությունը, կուսակցական համագումարների փաստաթղթերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, որը անձնական մեծ ավանդ է ներդնում կոմունիստական շինարարության պրոբլեմների գիտական մշակման գործում:

Հենց դրանով է ապահովվում մարքսիզմ-լենինիզմին, ճանաչման նրա դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդին տիրապետելը: Եվ միայն այդ դեպքում խորապես կարելի է ըմբռնել մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական բնույթը, մեր կուսակցության քաղաքականության գիտական հիմնավորվածությունը:

Մարքսիզմ-լենինիզմը հասարակության մասին գիտության բարձրագույն նվաճումն է: Եվ դրան իսկապես տիրապետելու համար պահանջվում է մեծ,







բարդ, լարված աշխատանք, գիտելիքների մշտական հարստացում ու նորացում. «...առաջին՝ սովորել, երկրորդ՝ սովորել և երրորդ՝ սովորել»,— մեզ պատգամել է Վ. Ի. Լենինը և նախազգուշացրել, «որ մեզանում գիտությունը մեռած տառ կամ մոդայական ֆրազ չմնա (իսկ այդ, մեղքներս ինչ թաքցնենք, մեզանում առանձնապես հաճախ է լինում), որ գիտությունը իրոք միս ու արյուն դառնա, կենցաղի բաղկացուցիչ տարր՝ լիովին և իսկապես»։ Լենինյան այս խոսքերը հիմա էլ թարմ ու ժամանակակից են հնչում բոլոր կոմունիստների և առանձնապես գաղափարախոսական ճակատի աշխատողների համար։ Հենց գաղափարախոսական կադրերի կողմից մարքսիզմ-լենինիզմի տեսության և մեթոդաբանության խոր յուրացումն ու ստեղծագործական կիրառումը ամբողջ գաղափարախոսական աշխատանքի հետագա բարելավման անհրաժեշտ պայմանն են։

Մարքսիզմ-լենինիզմը մշտապես զարգացող տեսություն է։ Եվ դրա հիմքում դրված են ժամանակակից հասարակական զարգացման բարդ պրոցեսների գիտական իմաստավորումը, նոր երևույթների վերլուծությունը։ Կուսակցությունն իր տեսական գործունեության մեջ մշտապես հենվում է սովետական հասարակագետ գիտնականների հետազոտությունների վրա։

Վերջին տարիներին սովետական հասարակագիտությունը որոշակի հաջողությունների է հասել։ Ակտիվ կերպով հետազոտվում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման պրոբլեմները։

Բայց կյանքը, սոցիալական պրակտիկան տեղում կանգնած չեն։ Դրանք մարքս-լենինյան տեսությանը ներկայացնում են ավելի բարձր պահանջներ, նրա առջև դնում նոր խնդիրներ։ Եվ հասարակական գիտությունները չպետք է ետ մնան կյանքից։ Հետազոտությունների արդյունավետությունը կարող է և պետք է զգալիորեն բարձրանա։ Յուրաքանչյուր գիտական կոլեկտիվում ստեղծելով ստեղծագործական, համարձակ որոնման մթնոլորտ, հարկավոր է վճռականորեն ազատվել իսկական գիտությանը խորթ այնպիսի երևույթներից, ինչպիսիք են մտահայեցողական դատողությունները, սխոլաստիկան, ցիտատամոլությունը, մակերեսային մեկնաբանությունը, ինչպես նաև նորարարության անվան տակ ձևամոլական մարզանքները։

Հասարակական գիտությունների արդյունավետության բարձրացման գլխավոր ուղին այն է, որ գիտնականների ջանքերը ավելի մեծ չափով կենտրոնացվեն հասարակական պրոգրեսի ժամանակակից փուլի առաջադրած արմատական պրոբլեմների հետազոտման վրա։

Մատերիալիստական դիալեկտիկան, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, մարքսիզմի կենդանի հոգին է։ Դիալեկտիկայի՝ որպես զարգացման ընդհանուր տեսության, որպես իմացության տրամաբանության ու տեսության դերով է որոշվում նրա հետագա մշակման առանձնահատուկ հրատապությունը։ Մասնավորապես անհրաժեշտ է ուսումնասիրել գիտության բոլոր բնագավառներում ամենաբարդ երևույթների և պրոցեսների ճանաչման, ինչպես նաև բնական գիտությունների նորագույն նվաճումների մատերիալիստական իմաստավորման համար նրա կոնկրետ կիրառման ուղիները։

Պատմական մատերիալիզմի և գիտական կոմունիզմի բնագավառում ներկայումս առաջին պլան են մղվում այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են մեր հասարակության սոցիալական համասեռության հետագա խորացումը՝ բանվոր դասակարգի առաջատար դերով հանդերձ, ազգերի ու ազգությունների մերձեցումը, պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ամրապնդումը, արդի պայմաններում հասարակական գիտակցության ձևավորման ու զարգացման օրինաչափությունները և առանձնահատկությունները։

Կան բավական թվով ավելի մասնավոր, բայց ոչ պակաս սուր և հրատապ հարցեր, որոնց պատասխանը կոչված է տալու մեր գիտությունը։ Ինչպես հայտնի է, XXV համագումարը նշեց, որ նյութական հնարավորությունների աճը պետք է մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարաբարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով։ Այլապես մենք կարող ենք ստանալ քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Այդ կապակցությամբ մեր փիլիսոփաների, սոցիոլոգների, հոգեբանների, մանկավարժների առջև ծառանում են մի շարք խնդիրներ և մասնավորապես խելացի պահանջմունքների ձևավորման պրոբլեմների մշակումը։ Մեր կուսակցական կադրերը, դաստիարակության ոլորտի պրակտիկ աշխատողները գիտնականներից սպասում են այդ կարևոր հասարակական պրոբլեմի լուծման ուղիների վերաբերյալ մտածված հանձնարարականներ։

Է՛լ ավելի է մեծանում սոցիալիզմի քաղաքատնտեսության հետագա ավելի խոր մշակման պահանջարկը, որը բոլոր տնտեսական գիտությունների հիմքն է, ՍՄԿԿ-ի տնտեսական քաղաքականության տեսական բազան։

Հատուկ նշանակություն ունի մեր էկոնոմիկայում սեփականության հարաբերությունների ամբողջ կոմպլեքսի, տնտեսական մեխանիզմի և կառավարման կառուցվածքի, տնտեսական շահերի և տնտեսության բոլոր օղակների գործողությունների ավելի ռացիոնալ համաձայնեցման, ճյուղային և տերիտորիալ պլանավորման հետազոտումը։ Ժամանակակից մոնոպոլիստական կապիտալիզմի մեջ տեղի ունեցող պրոցեսների, համաշխարհային հեղափոխական շարժման պրոբլեմների սիստեմատիկ ուսումնասիրումը պահանջում է մարքսիստ հասարակագետների անդուլ ուշադրությունը։

Գաղափարախոսական աշխատանքում հասարակագիտության դերի մեծացումը անխզելիորեն կապված է գիտական հետազոտությունների, առանձնապես ֆունդամենտալ հետազոտությունների որակի և կոմպլեքսայնության բարձրացման հետ։ Առանց հասարակական գիտությունների բոլոր բնագավառներում ֆունդամենտալ հետազոտություններ անցկացնելու՝ գաղափարախոսական, պրոպագանդիստական ու դաստիարակչական աշխատանքը չի կարողանա լրիվ կատարել իր խնդիրները։ Այդ հետազոտությունների կազմակերպման և անցկացման գործում կարևոր դեր է պատկանում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, նրա ինստիտուտներին, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիային, բարձրագույն ուսումնական հաստատություններին, մեր բոլոր տեսական ու գիտական կադրերին։

Զգտելով գաղափարախոսական աշխատանքի գիտականության ըստ ամենայնի բարձրացմանը, կադրերին զինելով բյուրեղի պես մաքուր մարքս-լենինյան տեսությամբ, մենք կկարողանանք առաջ տանել մեր ընդհանուր գործը այնպիսի մի կարևոր տեղամասում, ինչպիսին է քաղաքական լուսավորությունը։

Ինչպես հայտնի է, մեր երկրում մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրությամբ զբաղվում են միլիոնավոր սովետական մարդիկ։ Կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն սկսվում է դպրոցական նստարանից, շարունակվում է միջնակարգ մասնագիտական ու բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Երկրի աշխատավորները մարքս-լենինյան գիտությունն ուսումնասիրում են քաղաքական կրթության ճյուղավորված ցանցում։ Միայն անցած ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում պարապում էր ավելի քան 22 միլիոն մարդ։ Դա մեծ նվաճում է։ Բայց մենք սխալ թույլ կտայինք, եթե սահմանափակվեինք սոսկ արձանագրելով տվյալ փաստը և չնկատեինք այն օբյեկտիվ պրոբլեմները, որոնք ծագում են այստեղ։

Խնդիրը նախ և առաջ այն է, որ ամենալայն մասսաները է՛լ ավելի խորն ու բազմակողմանիորեն ըմբռնեն կուսակցության տեսության ու քաղաքականության հրատապ հարցերը։ Մարքսիզմ-լենինիզմի ֆունդամենտալ, բազիսային դրույթների ուսումնասիրումը պետք է հանգեցնի հենց աշխատավորների մտահորիզոնի ընդլայնմանը, նրանց քաղաքական կուլտուրայի բարձրացմանը։ Ընդ որում, մենք պետք է ելնենք ճանաչողական և պրակտիկ գործունեության միասնության սկզբունքից։ Ահա թե ինչու Կենտկոմի որոշումը պահանջում է, որ իմացությունը վերածվի համոզմունքի, գործողության ուղեցույցի, սովետական մարդու ակտիվ կենսադիրքորոշման, որը, հանդես բերելով բարձր գիտակցականություն, իր բոլոր ուժերը նվիրում է ընդհանուր գործին և անհաշտ կերպով հանդես է գալիս խորթ գաղափարախոսության ու բարոյախոսության բոլոր դրսևորումների դեմ։

սովետական հզոր էկոնոմիկան՝ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսն ստեղծած բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցությունը:

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության փոխադարձ կապն ու միասնությունը դրսևորվում են ինչպես մարդկանց ազգային արժանապատվությունը, ազգային կուլտուրաները հարգելով, այնպես էլ նացիոնալիզմի ու շովինիզմի ռեցիդիվների նկատմամբ անհաշտ վերաբերմունքով:

Անհրաժեշտ է վճռականորեն հանդես գալ ազգային բացառիկության ամեն տեսակի քարոզների դեմ, արտադասակարգային, արտապատմական դիրքերից անցյալի այս կամ այն երևույթը, այս կամ այն կերպարը, կոնցեպցիան վերանայելու բոլոր փորձերի դեմ: Հարկավոր է պայքարել նաև տեղայնության դրսևորումների դեմ, որը հաճախ ինչ-որ տեղական հայրենասիրության հագուստով է պճնվում:

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը առանձնապես հրատապ բնույթ են ստանում գաղափարախոսական պայքարի սրման պայմաններում, երբ նացիոնալիզմը դառնում է իմպերիալիստական հատուկ ծառայությունների գլխավոր հաշվարկներից մեկը ռեալ սոցիալիզմի դեմ նրանց քայքայիչ գործունեության մեջ:

Կոմունիստական դաստիարակության ոլորտում չկան նվազ էական, երկրորդական խնդիրներ: Կարևոր է, որ մեր տեսադաշտից չվրիպի մեր ժամանակակցի անձնավորության ձևավորման կողմերից ոչ մեկը՝ այն հաշվով, որ վնաս չհասցվի դաստիարակության ընդհանուր գործին: Հենց դրա համար էլ Կենտկոմի որոշումը, ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումներին լրիվ համապատասխան, կոնկրետացնում է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման, գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովման ուղիները, հաշվի առնելով աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունները:

## III.

Ընկերնե՛ր: Կուսակցության XXV համագումարին ներկայացված հաշվետու զեկուցման մեջ, Կենտկոմի որոշման մեջ ուշադրություն է նվիրված դաստիարակության կենսականորեն կարևոր լենինյան սկզբունքի՝ խոսքի և գործի միասնության վրա: Այդ սկզբունքը ուղղակի, անխզելի կերպով կապված է այն բանի հետ, ինչը և անպարտելի է դարձնում լենինյան կուսակցական պրոպագանդան. կապված է ճշմարտացիության, սկզբունքայնության, ռեալիստականության հետ: «Եթե մենք չվախենանք նույնիսկ դառն ու ծանր ճշմարտությունն ուղղակի ասելուց,— շեշտել է Վ. Ի. Լենինը,— ապա կսովորենք, անպատճառ ու անպայման կսովորենք հաղթահարել բոլոր ու ամեն տեսակ դժվարությունները»:

Լենինյան այս դրույթները լավ հայտնի են բոլորին: Սակայն, ցավոք, դեռևս կան մարդիկ, որոնք պրակտիկայում խախտում են դրանք, ասում են մի բան, իսկ անում մի ուրիշ բան, հեշտ են ստանձնում ամեն տեսակ պարտավորություններ, բայց դրանք չեն կատարում, ձգտում են հարթել, շրջանցել չլուծված պրոբլեմները, սուր հարցերը, լռությամբ մատնել իրական կյանքում գոյություն ունեցող թերություններն ու դժվարությունները: «Այդպիսի մոտեցումը, պարադայնության հակումը,— նշված է Կենտկոմի որոշման մեջ,— չեն օգնում գործին, այլ լոկ դժվարացնում են մեր ընդհանուր խնդիրների լուծումը: Այնտեղ, որտեղ հարգի չէ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որտեղ պակասում է հրապարակայնությունը հասարակական գործերում, ուղղակի վնաս է հասցվում մասսաների ակտիվությանը, իսկ չէ որ հենց մասսաների ակտիվությունն է սոցիալիստական հասարակարգի ուժի կարևոր աղբյուրը»:

Խոսքի ու գործի միասնությունը, գործով ագիտացիան վճռական նշանակություն ունեն մարդու գիտակցության ու տրամադրության վրա արդյունավետ ազդեցության համար:

Դաստիարակչական խոսքի իմաստն ու նշանակությունը լրջորեն կթուլանան այնտեղ, որտեղ ամենօրյա քրտնաջան աշխատանքի փոխարեն ծաղկում է



շաղակրատությունը, որտեղ գործնական միջոցառումները փոխարինվում են շատախոսությամբ, որտեղ խնայողության ռեժիմի մասին դատախոսությունից հետո մարդիկ գործարանի բակում տեսնում են ժանգոտող մետաղ և դեն նետված հաստոցներ, որտեղ տարրական կարգ ու կանոնի բացակայությունը քողարկվում է լայնորեն փողհարվող հավաստիացումներով և սին խոստումներով:

Կոնկրետ արարքը, ռեալ գործը ո՛չ միայն դաստիարակչական աշխատանքի բարձրագույն արդյունքն է, այլև բուն դաստիարակության հզորագույն գործոնը: Ահա թե ինչու կուսակցությունը պահանջում է, որ գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի ծավալման մեջ գլխավոր ջանքերը կենտրոնացված լինեն աշխատավորական կոլեկտիվում, այնտեղ, որտեղ, Լ. Ի. Բրեժնևի արտահայտությամբ, «քաղաքականության ու էկոնոմիկայի «մեծ» հասկացությունները թարգմանվում են պրակտիկայի լեզվով, որտեղ մարդկանց մեջ շատ բանով ձևավորվում է վերաբերմունքը կյանքի նկատմամբ, հասարակության նկատմամբ»:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը նպատակամղում է բարձրացնել ղեկավար կադրերի պատասխանատվությունը տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար, առաջավոր փորձի, սոցիալիստական մրցության, աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ ձևերի դաստիարակչական հնարավորությունների լրիվ օգտագործման համար: Ձեռնարկության աշխատանքի բուն պրակտիկան պետք է խթանի աշխատավորության պայքարը արդյունավետության ու որակի համար, կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի հանդեպ պատասխանատվության համար, խնայողության և սոցիալիստական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի համար:

Հարկավոր է միշտ հիշել գիտականորեն կազմակերպված աշխատանքի դաստիարակչական մեծ ուժի մասին, այն մասին, որ հստակորեն առաջադրված և նյութակազմակերպական ու բարոյաքաղաքական տեսակետից հուսալիորեն ապահովված արտադրական խնդիրների լուծման ընթացքում ձևավորվում են սովետական մարդու այնպիսի գծեր, ինչպիսիք են գիտակցական, ստեղծագործական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, հասարակական ակտիվությունը, վսեմ բարոյականությունը: Այդ հատկությունների ձևավորման համար կուսակցական և հասարակական կազմակերպությունների հետ միասին կուսակցությունը պատասխանատվություն է դնում նաև տնտեսական կադրերի վրա:

Ձեռնարկությունների ղեկավարները պետք է անմիջականորեն մասնակցեն դաստիարակչական միջոցառումներին: Կուսակցությունը դրան մեծ նշանակություն է տալիս: Բայց գլխավորը բուն կազմակերպական և տնտեսական աշխատանքի դաստիարակչական արդյունքն է: Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, այնտեղ, որտեղ տնտեսական կադրերը հաշվի չեն առնում իրենց գործունեության դաստիարակչական հետևանքները, ապա այդտեղ լիովին չի բացահայտվում մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, իսկ գիտակցական կարգապահությունը տեղը զիջում է ձևական կարգապահությանը, կոլեկտիվում չի ստեղծվում բարոյահոգեբանական պատշաճ մթնոլորտ, վերջին հաշվով տուժում են նաև արտադրական արդյունքները:

Կոլեկտիվի ղեկավարից մեծապես կախված է այնպիսի մթնոլորտի ստեղծումը, որն օգնում է մարդու ընդունակությունների բացահայտմանը, խթանում է նրա աշխատանքային ու հասարակական ակտիվությունը: Ընդ որում, իրեն՝ ղեկավարին պետք է բնորոշ լինեն ստեղծագործական վերաբերմունքը գործի նկատմամբ, ձեռնահասությունը և նախաձեռնողականությունը, կուսակցական բարձր պատասխանատվության զգացումը, պարզությունը և մարդկանց հետ վարվելու կարողությունը, նրանց շահերի ու պահանջմունքների խոր իմացությունը, ազնվությունը, սկզբունքայնությունը, համեստությունը:

Այդպիսի ղեկավարը ընդունակ է իր հետևից տանելու կոլեկտիվին, նրա առջև դնելու պետական առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ու գերակատարման հետ կապված բարդ խնդիրներ: Դաստիարակչական և մոբիլիզացնող մեծ նշանակություն ունեն տնտեսական

ղեկավարների պարբերական ու գործարար հաշվետվությունները կոլեկտիվի կուսակցական և արհմիութենական ժողովներում:

Դաստիարակչական աշխատանքի կարևոր օղակ են բրիգադները, ֆերմաները, արտադրական տեղամասերը: Այստեղ յուրաքանչյուր ոք աչքի առաջ է, այստեղ դյուրին է ի հայտ բերել աշխատողի պոտենցիալ հնարավորությունները, հաշվի առնել նրա անհատական առանձնահատկությունները: Զգալիորեն բարձրանում են նաև սկզբնական աշխատավորական կոլեկտիվների ու ստորին կուսակցական օղակների, կուսակցական խմբերի ղեկավարներին ներկայացվող պահանջները, երբ խոսքը վերաբերում է արտադրություն եկող երիտասարդության դաստիարակությանը: Ուստի վարպետներ, բրիգադավարներ, կուսակցական խմբերի ղեկավարներ, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպիչներ ընտրելիս անհրաժեշտ է անպայման հաշվի առնել նրանց մարդկային հատկությունները, հեղինակությունը, կուսակցության խոսքը յուրաքանչյուրին հասցնելու նրանց կարողությունը:

Ներկայումս ավելի ու ավելի ակնբախ է դառնում սոցիալիստական մրցության հարաճուն ազդեցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ազդեցությունը տնտեսական պրոցեսների վրա, հասարակական կյանքի շատ երևույթների վրա: ՍՄԿԿ Կենտկոմը շեշտում է, որ նորարարների ռեկորդային ցուցանիշները ոչ թե ինքնանպատակ են, այլ աշխատանքի արտադրողականության աճի արագացման նպատակով մասսաների աշխատանքային եռանդի մոբիլիզացման կարևորագույն միջոց, արդյունավետության ու որակի բարձրացման հզոր ռեզերվ: Պրակտիկան ցույց է տվել, որ այնտեղ, որտեղ մրցությունը ձևական բնույթ չի կրում, այնտեղ, որտեղ մրցությունը դիտում են որպես արտադրության վերելքի գործուն լծակ, առանձնապես ցայտուն է երևան գալիս նրա դաստիարակչական դերը՝ սոցիալիստական մրցության ներդաշնակ մեխանիզմը ապահովում է ոչ միայն աշխատանքային բարձր նվաճումներ, այլև ծնում է ընդօրինակման արժանի գործեր:

Դրա հետ միասին դեռևս վերացված չեն այնպիսի փաստերը, երբ որոշ ձեռնարկությունների ղեկավարներ շեշտը դնում են ոչ թե աշխատանքի լավ կազմակերպման վրա, այլ, փորձելով քողարկել իրենց գործունեության վրիպումները, ձգտում են պլանները վերանայել դրանք նվազեցնելու նպատակով, երբեմն բռնում են հավելագրումների, պետությանը խաբելու ճանապարհը: Ընդսմին՝ ստեղծվող բարօրության պատրանքը բացի տնտեսական ուղղակի վնասից նաև վարկաբեկում է սոցիալիստական մրցության գաղափարը, մեծ վնաս է հասցնում աշխատավորների դաստիարակության գործին: Այդպիսի պրակտիկան հակասում է նաև պլանը որպես օրենք դիտելուն:

Մեր հնարավորությունները կարող են ամբողջությամբ իրացվել լոկ այն ժամանակ, երբ յուրաքանչյուր կոլեկտիվ և յուրաքանչյուր աշխատող դրանք օգտագործի գիտակցաբար, կուսակցության ու կառավարության ձեռնարկած միջոցների էության ու նպատակների խոր իմացությամբ, երբ նրանք պարզորոշ պատկերացնեն իրենց դերը ժողովրդատնտեսական հսկայական մեխանիզմի աշխատանքում: «Հարցն այն է,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ գիտակից բանվորը իրեն զգա ոչ միայն որպես տեր իր գործարանում, այլ որպես երկրի ներկայացուցիչ, որ նա իր վրա զգա պատասխանատվություն»:

Սովետական մարդու բարոյական վսեմ հատկությունները, նրա քաղաքական կուլտուրան դրսևորվում են հենց գործի նկատմամբ, աշխատանքի հանձնարարված բնագավառի նկատմամբ, իր հասարակական պարտքի նկատմամբ ունեցած վերաբերմունքի մեջ:

Բոլորիս լավ հայտնի է, թե այս տարվա պայմանները որքան բարդ էին արդյունաբերական և հատկապես գյուղատնտեսական արտադրության համար: Ցրտաշունչ ձմեռը, իսկ ապա երաշտը երկրի որոշ շրջաններում պահանջեցին միլիոնավոր աշխատավորների լարված ջանքերը: Եվ մենք կարող ենք իրավամբ հպարտանալ, թե սովետական մարդիկ պարտքի ինչպիսի բարձր գիտակցությամբ, անձնվիրաբար են աշխատում գործարաններում, հանքերում ու էլեկտրակայաններում, դաշտերում ու ֆերմաներում, կառույցներում, մեր



երկրի բոլոր անկյուններում, որպեսզի կատարեն 1979 թվականի պլանները և իրենց սոցիալիստական պարտավորությունները:

Այսօր, ինչպես և երեկ, ինչպես և նախընթաց հնգամյակների տարիներին, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական նպատակասլաց աշխատանքը ժողովրդատնտեսական բոլոր խնդիրների լուծման կարևորագույն գործոններից մեկն է: Կրկին ու կրկին հաստատվում է Վ. Ի. Լենինի այն խորաթափանց ցուցումը, որ սոցիալիզմի պայմաններում տնտեսական շինարարության մեջ հարաճուն, հսկայական դեր կխաղան ագիտացիան և պրոպագանդան:

## IV.

Ընկերնե՛ր: Կենտկոմի որոշման կատարման աշխատանքում կոչված են կարևոր դեր խաղալու մեր մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի միջոցները: Կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն միշտ էլ համձինս մամուլի, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների տեսել են և տեսնում են գաղափարախոսական հզոր զենք, մասսաների կոմունիստական դաստիարակության ու կազմակերպման անփոխարինելի միջոց, հասարակական կարծիքի կազմավորման կարևոր գործոն: Ըստ էության չկա գաղափարախոսական այնպիսի ֆունկցիա, որն այս կամ այն չափով ներհատուկ չլիներ մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի միջոցներին: Թերթում տպագրված, եթերում հնչած խոսքը ժողովրդի մեջ մեծ հեղինակություն է վայելում:

Դրա հետ միասին մեր տպագիր և ռադիոհեռուստատեսային պրոպագանդայի ընդհանուր մակարդակը պետք է համապատասխանեցվի կոմունիստական շինարարության՝ իրենց մասշտաբներով և բարդությամբ աճած խնդիրներին, սովետական մարդկանց կրթական ու կուլտուրական բարձրացած մակարդակին, միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի սրմանը:

Մեր մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի միջոցները կուսակցության ու ժողովրդի հանդեպ իրենց պարտքը կկարողանան կատարել լոկ զգալիորեն ուժեղացնելով իրենց նյութերի կոնկրետությունը, բովանդակալիությունը, օպերատիվությունը, կուսակցական կրքոտությունը և այդ հիման վրա՝ իրենց ելույթների գործունությունը, արդյունավետությունը: Ընդ որում, գլխավոր ուշադրությունը պետք է նվիրվի կյանքի խոշոր, հրատապ պրոբլեմներին:

Մամուլի, մասսայական պրոպագանդայի մյուս միջոցների գործունությունը նախ և առաջ նշանակում է մեր նվաճումների, առաջավոր փորձի, լավագույնների օրինակի հմուտ պրոպագանդում: Ընդ որում, դրական փորձը պետք է ցույց տալ այնպես, որ բացահայտվի դրա էությունը, որ այն հետաքրքրություն առաջացնի միլիոնավոր մարդկանց մեջ, նրանց օգնի այդ փորձի լայն տարածմանը պրակտիկայում:

Կուսակցական, սովետական, արհմիութենական և առաջին հերթին տնտեսական մարմինները պետք է ուշադիր վերաբերմունք ունենան մամուլի այն նյութերի նկատմամբ, որոնցում վերլուծվում են սոցիալիստական մրցության արդյունքները, բացահայտվում են լրացուցիչ ռեզերվներ, մասսայականացվում են կառավարման, աշխատանքի կազմակերպման, նոր տեխնիկայի արմատավորման պրոգրեսիվ մեթոդները, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման ուղիները: Առաջավոր փորձը, նորարարների մեթոդները պրոպագանդող նյութերի նկատմամբ անուշադիր վերաբերմունքը նույն անտնտեսվարությունն է, արտադրության նույն չօգտագործված ռեզերվները:

Մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի արդյունավետության նկատմամբ կուսակցական կոմիտեների հոգատարությունը պետք է լինի մշտական: Այն ուղղակիորեն կապված է ժուռնալիստների գաղափարական հասունության, սկզբունքայնության ու պրոֆեսիոնալ համարձակության դաստիարակման հետ, հասարակության համար օգտակար կերպով կյանքին արտադրության, տնտեսության ու մշակույթի ոչ հասարակ պրոբլեմներին ակտիվորեն միջամտելու նրանց պատրաստակամության դաստիարակման հետ: Դա հոգատարություն է խմբագրություններում իրոք կուսակցական, ստեղծագործական մթնոլորտի

ստեղծման նկատմամբ, նրանց աշխատանքում հասարակական հիմունքների զարգացման նկատմամբ։

Չի կարելի հաշտվել այնպիսի իրավիճակի հետ, երբ, ինչպես ասում են. «Գրողը քիչ-միչ գրում է, ընթերցողն էլ՝ իր համար կամաց-կամաց կարդում», և ոչ ոք ոչ ոքի չի նեղացնում, և բոլորն էլ ամեն ինչից գոհ են։ Ժուռնալիստիկան մարտական գործ է, որը պահանջում է բարոյաքաղաքական և գործարար վեհ հատկություններ և բարոյական ուժեր, իսկ որ գլխավորն է՝ խոր համոզվածություն և լուրջ գիտելիքներ։

Մամուլի օրգանների պասսիվության ամեն մի դրսևորում անհանդուրժելի է նաև այն պատճառով, որ մեր կյանքում դեռևս գոյություն ունեն բազմաթիվ չլուծված պրոբլեմներ, թերություններ, իսկ երբեմն էլ՝ այլանդակ երևույթներ, որոնք հակասում են սոցիալիստական ապրելակերպի էությանը։ Այդ ամենին թե՛ արտադրության մեջ և թե կենցաղում բախվում են սովետական մարդիկ։ Եվ եթե տպագիր օրգանն ուզում է ընթերցողի մոտ հեղինակություն ունենալ, եթե ժուռնալիստները մտածում են այն մասին, թե ինչպես կատարեն իրենց պրոֆեսիոնալ առաքելությունը, ապա նրանք չեն կարող, չպետք է մոռանան, որ անհրաժեշտ է սիստեմատիկաբար հասարակայնության դատին հանձնել նրան հուզող հարցերը, նշանառու կրակի տակ առնեն բացթողումներն ու թերությունները, հաստատեն նորը, առաջավորը։ Մամուլը հենց այդպես կարող է հաջողությամբ հանդես գալ որպես մասսաների այնպիսի մարտական կազմակերպիչ ու դաստիարակ, որը աշխատավորների եռանդը մղում է հաղթահարելու թերություններն ու դժվարությունները, լուծելու կոմունիստական շինարարության բազմազան խնդիրները։

Մամուլի ելույթների գործունության համար պայքարելը նշանակում է ապահովել հրապարակվող նյութերի ճշմարտացիությունը, փաստարկվածությունը, հրատապությունը, հարցերի լուսաբանման հետևողականությունն ու կուսակցական սկզբունքայնությունը։ Այստեղ մեծ է կուսակցական կոմիտեների դերը, ինչպես այդ ընդգծված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Շատ բան է պայմանավորված նրանով, թե կուսակցական կոմիտեները սովետական, տնտեսական, արհմիութենական կազմակերպությունների աշխատողների շրջանում արդյոք դաստիարակո՞ւմ են ճիշտ վերաբերմունք մամուլում հրապարակված քննադատության նկատմամբ։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը իսկական օրինակ են ցույց տալիս՝ պաշտպանելով մամուլի քննադատական ելույթները և, երբ դա հարկավոր է, ուղղելով տնտեսական ղեկավարներին, մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատողներին, նրանց պարտավորեցնելով գործնականորեն արձագանքել քննադատությանը և համապատասխան միջոցներ ձեռք առնել գործերի վիճակը բարելավելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմը այստեղ առաջնորդվում է Վ. Ի. Լենինի ցուցումով, որը պահանջում էր մանրակրկիտ կերպով ստուգել և ուսումնասիրել փաստերը և պարտադիր կարգով, անհապաղ արձագանքել մամուլի քննադատական ահազանգումներին, առհասարակ քննադատությանը. ոչ թե ձևական խուսագրություն, այլ գործարար, խելամիտ արձագանք։

Բայց իրենք՝ ժուռնալիստները ևս պետք է միշտ հիշեն, որ մակերեսային ձաղկումը, սենսացիան, որպես կանոն, իջեցնում են քննադատական ելույթների նշանակությունը։ Գլխավորը քննադատական խոսքի մոբիլիզացնող նշանակությունն է, դրա կոնստրուկտիվ բնույթը և պարզորոշ հասցեն, դրա նպատակաուղղվածությունը այն թերությունների ու դժվարությունների վերացմանը, որոնք ծնվում են ամեն մի ատրիճանի աշխատողների բյուրոկրատիզմի, անտարբերության, անկազմակերպվածության պատճառով կամ, որ ամենից հաճախ լինում է՝ նրանց կողմից ոչ թե պետական, այլ գերատեսչական ու տեղայնական շահերը պաշտպանելու պատճառով։

Յուրաքանչյուր գործում, իսկ քննադատության մեջ հատկապես, հարկավոր է լինել հետևողական։ Կուսակցական կոմիտեները, մամուլի նրանց օրգանները պարտավոր են բոլոր դեպքերում հասնել թերությունների հաղթահարմանը, դրանց պատճառների վերացմանը։ Եթե, օրինակ, իր ելույթից հետո թերթը չի



հաղորդում ձեռնարկված միջոցների մասին, ապա ընթերցողն սկսում է կասկածել, թե թերթը պաշտպանություն չի գտել, չի կարողացել կենսագործել այն, ինչի կոչ էր անում։ Եվ մենք պրոպագանդիստական, գաղափարախոսական առումով բացասական արդյունք ենք ստանում։ Դա անտարբեր է դարձնում մարդկանց, հոռետեսություն հարուցում։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ մանրամասն բացահայտված են այն միջոցները, որ պետք է ձեռնարկեն մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի միջոցների խմբագրությունները, որպեսզի նրանց աշխատանքի մակարդակը համապատասխանի արդի պահանջներին։ Ճիշտ են վարվում այն կուսակցական կոմիտեները, որոնք պահանջկոտությամբ, խստապահանջորեն ձգտում են հասնել դրանց ռեալ իրականացմանը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ պաշտպանելով և ամեն օր ուղղություն տալով իրենց թերթերի, ռադիոյի ու հեռուստատեսության գործունեությանը, կուսակցական կոմիտեները ոչ միայն բարձրացնում են մամուլի հեղինակությունը, այլև մեծացնում շրջանի, մարզի, հանրապետության տնտեսական ու մշակութային զարգացման ընթացքի վրա իրենց գաղափարախոսական ներգործության ուժը։

Հատկապես պետք է ասել դաստիարակչական ներգործության այն լիցքի մասին, որ կրում են հիրավի անպարփակ լսարան ունեցող հեռուստատեսության ու ռադիոյի վավերագրական-հրապարակախոսական ու գեղարվեստական ստեղծագործությունները։ Այդ կարևոր մարզում պետք է աշխատել անդուլ, չնվազեցնելով պահանջկոտությունը, հիշելով, որ իրենց բովանդակությամբ անխստապահանջ, գեղարվեստական թույլ մակարդակի, աննշան հաղորդումները ոչ միայն փչացնում են ճաշակը, այլև հանդիսականին, հատկապես երիտասարդին, վարժեցնում մակերեսայնորեն դատել կյանքի երևույթների մասին, թեթևամտորեն վերաբերվել արվեստին։

Մի քանի խոսք արդի պայմաններում **գեղարվեստական ստեղծագործության ոլորտի** կենսական խնդիրների մասին։ Կուսակցությունը միշտ էլ մեր գրականության և արվեստի ստեղծագործությունների գաղափարայնությունն ու գեղարվեստականությունը դիտել է անխզելի կապի մեջ՝ որպես դրանց արժանիքի գնահատման միասնական չափանիշ։ Դա կրկնակի արդարացի է այսօր, երբ կյանքի երևույթների, սոցիալիստական իրականության գեղարվեստական իմաստավորումը չի կարելի պատկերացնել առանց հասարակության մեջ տեղի ունեցող տնտեսական, սոցիալական ու հոգևոր պրոցեսների խոր ըմբռնման։

Գրականության և արվեստի գործիչները քիչ ավանդ չեն ներդնում սովետական մարդու հոգևոր զարգացման, նրա բարոյական կատարելագործման ու գեղագիտական դաստիարակության գործում։ Մենք կարող ենք գոհունակությամբ ասել, որ մեր գրականության և արվեստի զարգացումն ընթանում է ժամանակակից հերոսի՝ կոմունիզմ կառուցողի խառնվածքի ավելի ու ավելի խոր և արգասավոր հետազոտման և մեր ժամանակի բարդ, հրատապ պրոբլեմներին համարձակորեն դիմելու ուղիով։

Գաղտնիք չէ, սակայն, որ տաղանդավոր, բարձր գաղափարական վեպերի, պիեսների, կինոնկարների կողքին դեռևս երևան են գալիս նաև գորշ ստեղծագործություններ։ Տեղ-տեղ նկատվում են դեպի մանրաթեմայնություն, նատուրալիստական կենցաղանկարագրություն, քաղքենիական աննշան կրքերի աշխարհ հեռանալու միտում։ Որոշ ստեղծագործություններում հանդիպում են նաև պատմականորեն ոչ հավաստի, աղավաղված պատկերացումներ անցյալի մասին, տարօրինակ հակումներ պատմական արկածախնդիր անձնավորությունների հանդեպ, մակերեսային դատողություններ արդիականության մասին։ Այդ երևույթները չպետք է դուրս մնան ստեղծագործական կազմակերպությունների և նրանց տպագիր օրգանների տեսադաշտից։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, թատրոնի և կինոյի գործիչների, ժուռնալիստների ստեղծագործական ակտիվության զարգացումը դիտվում է նրանց մոտ բարձրգաղափարայնություն, քաղաքացիականություն դաստիարակելու ուղղակի փոխկապակցության մեջ։ Իսկ դա առաջին պլան է մղում գեղարվեստական մտավորականության գաղափարաքաղաքական դաստիարակության և մարքս-լենինյան կրթության հետագա

կատարելագործման խնդիրը։ Ստեղծագործական միությունները կոչված են նպաստել արվեստագետի գաղափարական մտահորիզոնի ըստ ամենայնի ընդլայնմանը, վարպետության բարձրացմանը, նրա ուշադրության սևեռմանը հասարակայնորեն նշանակալի պրոբլեմների վրա։

## V.

Ընկերնե՛ր։ Մենք ամփոփում ենք «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման մարզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքի առաջին արդյունքները։ Մենք անցել ենք սոսկ սկզբնական, բայց կարևոր մի փուլ՝ կապված կուսակցության պահանջների բնույթի խոր պարզաբանման և դրանց իրականացման ուղղությամբ աշխատանքի ձեռնարկման հետ։

Կարելի է գոհունակությամբ նշել, որ կոմունիստները, աշխատավորները գործարար կերպով են քննարկել որոշումը։ Դրանում անտարակուսելի վաստակ ունեն մեր կուսակցական կոմիտեները։ Որոշումը կատարելու ուղղությամբ մեծ աշխատանք են ծավալում Մոսկվայի, Լենինգրադի, մի շարք հանրապետությունների, մարզերի ու երկրամասերի կուսակցական կազմակերպությունները։

Սակայն, կարևոր է, որ ինքներս մեզ պարզ հաշիվ տանք այն բանում, որ ցանկացած, նույնիսկ ամենաանբասիր որոշումը իրադարձությունների ընթացքին ուղղություն տվող ռեալ ուժ է դառնում միայն այն ժամանակ, երբ կենսագործվում է հետևողականորեն և կոնկրետ դրական ազդեցություն է ունենում այս կամ այն կազմակերպության, աշխատավորական կոլեկտիվի գործերի վիճակի վրա։ ՍՄԿԿ Կենտկոմը հենց այս դիրքերից կգնահատի ծավալված աշխատանքի արդյունավետությունը։

Նշելով որոշումը կատարելու կոնկրետ միջոցառումներ, կոմունիստները մտահոգություն էին հայտնում այն բանի համար, որ այդ աշխատանքը չվերածվի հերթական կամպանիայի։ Նման մոտեցումը, անշուշտ, ճիշտ է։ Պատահական չէ, որ ներկայումս առանձնակի նշանակություն են ստանում գաղափարադաստիարակչական աշխատանքի գործնական կազմակերպման, գաղափարախոսական գործունեության կոորդինացման հարցերը։ Խոսքն այն մասին է, որ մենք պետք է մեր գաղափարական ազդեցության մեջ ընդգրկենք ամբողջ մասսային և միևնույն ժամանակ յուրաքանչյուր մարդու առանձին։ Իսկ դա պահանջում է գաղափարախոսական, դաստիարակչական ներգործության բոլոր միջոցների հմուտ օգտագործում։ Հաջողությունը, որպես կանոն, ձեռք է բերվում այնտեղ, որտեղ միասնաբար են գործում կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, ընտանիքն ու դպրոցը, ադմինիստրացիան ու հասարակայնությունը, որտեղ գաղափարախոսական դրույթները նպատակասլացորեն են մարմնավորվում աշխատանքի, ուսման, կենցաղի ոլորտի պրակտիկ գործողություններում։ Այդ կապակցությամբ պետք է շեշտել կուսակցական կոմիտեների գաղափարախոսական հանձնաժողովների, ինչպես նաև դաստիարակչական աշխատանքը կազմակերպելու լավագույն փորձի տարածման կարգավորված սիստեմի դերը։

Սույն որոշման կատարման ուղղությամբ կուսակցական կոմիտեների ծավալած գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ իսկ աշխատանքում դեռևս քիչ չեն հանդիպում հենց այն թերությունները, որոնք, ինչպես նշվում է որոշման մեջ, էապես նվազեցնում են գաղափարական ազդեցության արդյունավետությունը։ Այդ մասին Կենտկոմին գրում են կոմունիստներն ու անկուսակցականները, այդ մասին, ինչպես ձեզ քաջ հայտնի է, նյութեր են երևում մեր կուսակցական մամուլում։

Մի շարք կազմակերպություններում որոշման նշանակության, դրա պարտադիր կատարման մասին խոսքերը չեն ամրապնդվում ռեալ միջոցառումներով, հենց տվյալ ձեռնարկության կամ հիմնարկի գործերի վիճակի ինքնաքննադատական վերլուծությամբ։ Երբեմն սահմանափակվում են «առկա թերությունների մասին» վերացական դատողություններով, գերի մնում ընդհանուր ֆրազներին, խոսքը չեն կապում գործի հետ։ Օրինակ, ինչպես հաղորդել է



«Պրավդան», ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը նման ոգով է քննարկել ՍՍՀՄ Պետշինի կոլեգիան։

Հաստատակամորեն ձգտելով հասնել դաստիարակության գործի ըստ ամենայնի բարելավման, գաղափարախոսական աշխատանքի առաջավոր փորձի տարածման, պետք է ամեն կերպ խուսափել տրաֆարետայնությունից, որն անխուսափելիորեն տանում է դեպի ձևամոլություն, կործանում նախաձեռնությունը։ Լուրջ վնաս են հասցնում նաև դաստիարակության պրոցեսը զուտ քանակական, ձևական չափանիշների ու գնահատականների շրջանակի մեջ խցկելու փորձերը։ Նման պարզեցված, գրասենյակային բյուրոկրատական մոտեցման դեպքում տեսադաշտում երևում է միայն կատարված միջոցառումների քանակը։ Դաստիարակության նմանօրինակ, ինչպես այն իրավացիորեն անվանում են, «նշումային» սիստեմը, որը, Լենինի բառերով ասած, զուգորդում է «իր դարն ապրած հինն ու անկենդան մոդայականը», բնավ չի նպաստում գաղափարադաստիարակչական աշխատանքի հաջողությանը։

Հասկանալի է, գործի նկատմամբ իսկական ստեղծագործական մոտեցումը ընդհանուր ոչինչ չունի կուսակցության գաղափարախոսական աշխատանքի այն ձևերի ու մեթոդների նկատմամբ ժխտողական վերաբերմունքի հետ, որոնք մշակվել ու փորձարկվել են պրակտիկայում։ Չէ որ գաղտնիք չէ, որ դաստիարակչական աշխատանքում ձևամոլությունը (դա նրա մեծ թերությունն է) կենսունակ է և բազմադեմ։ Հաճախ այն աճում է այդ բարդ և նուրբ ոլորտի նկատմամբ զանազան կարգի արհեստական նորույթների, սոսկ արտաքուստ արդյունավետ մեթոդների ու եղանակների կիրառման, աղմուկի ու շաղակրատանքի հողի վրա, որը կտրականապես հակասում է կոմունիստական դաստիարակության բուն էությանն ու ոգուն։

Կարևոր է գտնել և լայնորեն օգտագործել աշխատանքի այնպիսի նոր ձևեր, որոնք հնարավորություն են ընձեռում առավել լիովին հաշվի առնել դաստիարակչական գործունեության առանձնահատկությունները այս կամ այն ռեգիոնում, այս կամ այն սոցիալական խմբի հետ։ Այսպես, օրինակ, դաստիարակության գործունեության բարձրացմանը լրջորեն օգնում է միասնական քաղպարապմունքների օրերի անցկացումը։ Մի շարք քաղաքների և մարզերի կուսակցական կոմիտեների աշխատանքի պրակտիկան վկայում է, որ նման օրերը, եթե դրանք լավ են կազմակերպված, թույլ են տալիս ընդգրկել նաև բնակչության այնպիսի խմբեր, որոնց հաճախ անբավարար ուշադրություն է դարձվում, հնարավորություն են ընձեռում ավելի լավ զգալու աշխատավորներին հուզող հարցերը, համոզիչ պատասխաններ տալու դրանց և մշակելու համապատասխան հանձնարարականներ գաղափարական և ոչ միայն գաղափարական կազմակերպությունների համար։

Դաստիարակչական աշխատանքի հաջողությունն զգալիորեն պայմանավորված է ակտիվի, հասարակական կարծիքի վրա հենվելով։ Հայտնի է, թե Վ. Ի. Լենինը ինչպիսի անհանդուրժողականությամբ էր վերաբերվում սովետական օրինականության ամեն տեսակ խախտումներին և հատկապես հանցագործություններին, պահանջում էր անխնա պայքար մղել դրանց դեմ, այդ գործում ավելի ակտիվորեն ներգրավելով աշխատավորության լայն զանգվածներին։

Կուսակցությունը հարցն այդպես է դնում նաև այժմ։ «Իրավակարգի պահպանման աշխատանքը բարելավելու և իրավախախտումների դեմ պայքարն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը նշում է, որ անհրաժեշտ է է՛լ ավելի վճռականորեն արմատախիլ անել հանցագործություններն ու հակահասարակական մյուս երևույթները։

Սոցիալիստական իրավակարգն ամրապնդելու համար մղվող պայքարը կուսակցության կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքի անկապտելի բաղկացուցիչ մասն է։ Առանձնահատուկ հոգատարության առարկա պետք է դառնան դաստիարակչական աշխատանքի ուժեղացումն ու իրավախախտումների կանխումը անչափահասների շրջանում, ընտանիքի, դպրոցի, կոլեկտիվի դերի բարձրացումը այդ գործում։

Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ որոշ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական կազմակերպություններ թե-

բացահայտում են հանցագործությունների դեմ պայքարի հարցերի ամբողջ կարևորությունը, ձևականորեն են զբաղվում դրանցով, թույլ են օգտագործում դաստիարակչական, կանխարգելիչ միջոցառումների առկա զինանոցը: Միշտ չէ, որ պատշաճ հարձակողական բնույթ են կրում միլիցիայի, դատախազության գործողությունները իրավախախտողների դեմ մղվող պայքարում: Պետք է ասել նաև այն մասին, որ տեղ-տեղ բթացել է քաղքենիական բարոյախոսության ու սեփականատիրական հոգեբանության դրսևորումների դասակարգային քաղաքական գնահատականը:

Մի խոսքով, մենք պետք է նպատակաուղղենք ներգործության բոլոր միջոցները, մոբիլիզացնենք կոլեկտիվ ջանքերը, որպեսզի աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ, իրենց հասարակական պարտականությունների նկատմամբ ազնիվ վերաբերմունքը, կոմունիստական բարոյականության սկզբունքները դառնան յուրաքանչյուր մարդու անձնական համոզմունքը, նրա վարքագծի նորմը:

Հավանության է արժանի այն, որ մասսայական ինֆորմացիայի մեր միջոցները հանդես են գալիս որպես որոշումը պրոպագանդելու և իրականացնելու պայքարի նախաձեռնողներ: Թերթերը, հեռուստահաղորդումները, ռադիոծրագրերը բովանդակությամբ դարձել են ավելի խոր, ավելի հետաքրքիր, ավելի կենսունակ ու սուր և, որ առանձնապես կարևոր է, մարդուն ավելի սրտամոտ: Ավելացել են բովանդակալից, բազմազան թեմատիկայով ինֆորմացիաները: Նկատելի է խոշոր պրոբլեմային ու քննադատական նյութերի երևան գալը: Բարելավվել է ընթերցողների նամակների օգտագործումը:

Գոհունակությամբ կարելի է նշել սոցիալ-տնտեսական կարևոր հարցերի հիմնավոր արծարծումն ու լուսաբանումը «Պրավդայի», «Իզվեստիայի», ինչպես նաև «Սովետսկայա Ռոսիայի» և որոշ այլ թերթերի էջերում, որտեղ արծարծվում են արտադրական կյանքի ու կենցաղի հրատապ հարցերը, բարոյականության ու բարոյախոսության թեմաները: Ամենալայն լսարանին են հասցեագրված կենտրոնական հեռուստատեսության և համամիութենական ռադիոյի նոր հաղորդումները՝ «Պրոբլեմներ, որոնումներ, լուծումներ», «Հանդիպումներ ձեր խնդրանքով» և այլն: Դրանց մասնակից են դարձվում, ինչպես դա պահանջվում է Կենտկոմի որոշմամբ, խոշոր մասշտաբի տնտեսավարներ, ականավոր գիտնականներ, մասնագետներ, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարներ: Նրանք պատասխանում են աշխատավորների հարցերին, այդ թվում սովետական մարդկանց հիմնավորված բողոքներին և օրինական պահանջներին, պատմում, թե ինչպես պետք է շտկվեն թերությունները, ինչպիսիք են ձեռնարկությունների և ճյուղերի աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացման հեռանկարները:

Սոցիալիստական մրցության լուսաբանման գործում նկատելիորեն նվազել են վերացական կոչերը: Մամուլը իրավացիորեն գերադասում է պրոպագանդել այն կոլեկտիվների մրցությունը, որոնք ընտրել են աշխատանքի փորձված արդյունավետ մեթոդներ: Թերթերի, հեռուստատեսության, ռադիոյի օգնությամբ, օրինակ, լայնորեն տարածվում է այն կոլեկտիվների մրցությունը, որոնք կիրառում են արտադրանքի որակի կառավարման լվովյան սիստեմը, աշխատում շչոկինյան, իպատովյան, յամպոլյան մեթոդներով, Ն. Զլոբինի շինարարների բրիգադի մեթոդով, ինչպես նաև Սայանո-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանի կառուցման հետ կապված հարցերը կոմպլեքսայնորեն լուծելու՝ Լենինգրադի և Կրասնոյարսկի ձեռնարկությունների փորձը:

Այստեղ, անտարակույս, առաջընթաց կա, թեպետ դեռևս չի հաղթահարված քիչ հիմնավորված կամ էլ զուտ ձևական նորույթների շուրջ աղմկարարության պրակտիկան:

Ընդհանուր առմամբ դեռևս չի կարելի ասել, թե մամուլի բոլոր օրգանները, պրոպագանդայի միջոցները ձեռնամուխ են եղել որոշման մեջ առաջ քաշված խնդիրների խոր, բազմակողմանի իրացմանը: Խմբագրությունները տակավին անբավարար եռանդով են ձգտում հասնել նյութերի որակի, ինֆորմացիայի օպերատիվության, ելույթների ռեալ ներգործության բարելավմանը:

Չի կարելի ասել նաև, թե կատարված է տպագիր օրգանների կողմից ինֆորմացիայի տարբերակված տարածման մասին, իրենց «դեմքը», հիմնական թեմաների իրենց շրջանակն ունենալու, ժանրերը բազմազան դարձնելու, նյութերի ոճի ու լեզվի համար հոգալու անհրաժեշտության մասին որոշման բովանդակած պահանջը: Այսպես, օրինակ, դեռևս հաճախ են վերնագրերում հանդիպում ձևական կոչեր՝ «ուժերը լարել», «բարձրացնել», «կրկնապատկել եռանդը» և այլն: Նմանօրինակ կոչերը հաճախակի կրկնությունից մաշվում են և չեն ազդում: Նմանօրինակ հայտարարությունների փոխարեն պետք էր համոզչորեն բացահայտել աշխատանքային նախաձեռնությունների, հարվածային աշխատանքի մեթոդների բովանդակությունն ու իմաստը: Այս առումով մեզ համար հետաքրքրություն են ներկայացնում կուտակված փորձի յուրաքանչյուր մասնիկը, աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունների յուրաքանչյուր դրսևորումը:

Համեմատաբար կարճ ժամկետում մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով որոշ աշխատանք է կատարված արտաքին քաղաքական պրոպագանդան ընդլայնելու ու խորացնելու ուղղությամբ: Հեռուստատեսային էկրանին ամեն օր երևում է ինֆորմացիոն հրապարակախոսական նոր հաղորդում, որի մեջ միահյուսվում են քաղաքական վերլուծության թե՛ օպերատիվությունը և թե կոնկրետությունը: Համաշխարհային եթերում սկսել է բոլոր մայրցամաքներում գիշեր-ցերեկ հնչել մոսկովյան ռադիոյի ձայնը անգլերեն, որն զգալիորեն ընդլայնել է Մոսկվայի միջազգային լսարանը:

Մասսայական պրոպագանդայի և ինֆորմացիայի մեր միջոցները, գաղափարական հիմնարկները պետք է այսուհետև էլ ըստ ամենայնի կատարելագործեն պրոպագանդան ու հակապրոպագանդան, համոզչորեն ցույց տան սովետական քաղաքական ու հասարակական կարգի նվաճումները և առավելությունները, ՍՄԿԿ-ի և սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը: Անհրաժեշտ է լայնորեն պրոպագանդել աշխատանքի, կրթության, անվճար բուժսպասարկման, բնակարանի իրավունքները՝ մարդկային հիմնական իրավունքները, որոնք չկան Միացյալ Նահանգներում, մյուս կապիտալիստական պետություններում, բայց որոնք երաշխավորվում են Սովետական Միությունում:

Մեր պրոպագանդան պետք է զգայուն արձագանքի աշխարհում տեղի ունեցող փոփոխություններին, ժամանակին և հիմնավորված հակահարված տա ամեն տեսակ գաղափարախոսական մեքենայություններին ու զրպարտություններին, մերկացնի թշնամական պրոպագանդայի կեղծիքը: Ընդ որում, պետք է նկատի ունենալ, որ գաղափարական հակառակորդը, նրա հատուկ ծառայությունները անընդհատ զրպարտչական, պրոպագանդիստական կամպանիաներ են մղում, որոնք հաճախ ընդունում են ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ ուղղված հոգեբանական պատերազմի բնույթ, չեն խորշում ուղղակի պրովոկացիաներից: Իմպերիալիստական ռեակցիան ձգտում է խարխլել լարվածության թուլացման ուղին, աշխարհը վերադարձնել «սառը պատերազմի» ակունքներին: Հենց այդ կեղտոտ նպատակների համար էլ «հայտնագործվեց» Սովետական Միությունում մարդու իրավունքների և ազատությունների թվացյալ խախտման պրոբլեմը: Այսօր, երբ զրպարտանքի ու կեղծիքի այդ կամպանիան շնչահեղձ է լինում, մեր հակառակորդները փնտրում են այլ առիթներ, օգտագործում ուրիշ ուղիներ. գործի է դրվում ամեն ինչ: Եվ մենք պետք է կարողանանք մերկացնել հակառակորդի ամենախորամանկ պրովոկացիաները:

Պետք է սովետական մարդկանց մեջ հետևողականորեն դաստիարակել քաղաքական աչալրջություն, դասակարգային սուր զգացողություն, գաղափարական համախմբվածություն ու համոզվածություն, մեր կարգի և մեր գաղափարների գերազանցության գիտակցում, հայրենիքը, սոցիալիզմի հեղափոխական նվաճումները պաշտպանելու պատրաստակամություն: Մենք պետք է հմտորեն, որակյալ ու հիմնավորված կերպով բացահայտենք կապիտալիզմի՝ որպես շահագործման, ճնշման ու բռնության սիստեմի արատները, կենդանի օրինակներով, մարդկային կոնկրետ ճակատագրերով ցույց տանք, թե ինչ բան է մասսայական գործազրկությունը, անելանելի աղքատությունը, թե իմպե-

բիալիստական բուրժուազիան ինչ արյունոտ հանցագործությունների է դիմում, երբ ռեալ սպառնալիք է ստեղծվում նրա գերիշխանության համար։

Անհրաժեշտ է սիստեմատիկաբար ցույց տալ ռեալ սոցիալիզմի հաջողությունները, ամրապնդել ինտերնացիոնալ համերաշխությունը սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման հետ։ Մասսայական ինֆորմացիայի միջոցների մշտական խնդիրներից մեկն է լուսաբանել սոցիալիստական երկրների կյանքը իր ողջ բազմազանությամբ, առանձնահատուկ ուշադրություն դարձնելով եղբայրական կուսակցությունների կողմից հասարակական հրատապ պրոբլեմների լուծման կոնկրետ դրական փորձին, եղբայրական պետությունների քաղաքական, գաղափարախոսական, տնտեսական համագործակցությանը, նրանց հարաբերությունների իրավահավասար ու փոխշահավետ բնույթին։ Կարևոր է նաև ցույց տալ եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների անձնվեր պայքարն ընդդեմ իմպերիալիզմի և պատերազմի նոր վտանգի, հանուն կոմունիզմի իդեալների, հանուն բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների արմատական շահերի, հանուն սոցիալական պրոգրեսի։

Միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի սրվելը պահանջում է մեր արտաքին քաղաքական պրոպագանդայի հետագա կատարելագործում և դրա հետ մեկտեղ գաղափարական դաստիարակության մակարդակի բարձրացում երկրի ներսում։ Խոսքը վերաբերում է կոմունիստական համոզմունքի դաստիարակությունն ուժեղացնելու անհրաժեշտությանը, բուրժուական գաղափարախոսության նկատմամբ անհաշտվողականությանը, գաղափարական հակառակորդի բոլոր նկրտումներին վճռական, հիմնավորված հակահարված տալու ունակությանը։



Ընկերնե՛ր։ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը սահմանում է կուսակցության գործունեության հիմնական ուղղությունները հասարակական կյանքի այդ կարևորագույն ոլորտում։ Այդ գործունեության հաջողության գլխավոր պայմաններից մեկը աշխատանքի լենինյան ոճն է՝ ստեղծագործական ոճը, որը հիմնված է հասարակական երևույթների էության և բնույթի մարքս-լենինյան խոր ըմբռնման վրա, որը խորթ է ձևամոլությանը և կամպանիականությանը։

Գաղափարախոսական կադրերի համար այդ ոճին հետևելը նշանակում է ապահովել ոչ միայն ամբողջ գաղափարաքաղաքական աշխատանքի լավ, գործուն կազմակերպում ու կոորդինացում, նպատակասլացություն հաղորդել գաղափարախոսական բոլոր կազմակերպությունների և դաստիարակության միջոցների գործողություններին, այլև մշտապես գտնվել այդ աշխատանքի հորձանուտում, հետևել դրա ռեալ արդյունքներին, պատասխանել աշխատավորների աճող հոգևոր պահանջմունքներին։

Կուսակցական բոլոր կոմիտեները մշակել, հաստատել և սկսել են իրականացնել գաղափարախոսական գործունեության հեռանկարային կոմպլեքսային պլաններ։ Այժմ անհրաժեշտ է կարգավորել կատարման ստուգումը, կուսակցական կոմիտեների տեսադաշտից դուրս չթողնել կոմունիստական դաստիարակության ամբողջ ոլորտի ուղղություններից ու ասպեկտներից ոչ մեկը։

Այդ կազմակերպչական գործունեության անկապտելի բաղկացուցիչ մասը պետք է դառնա գաղափարախոսական կադրերի հետ տարվող նույնչափ սիստեմատիկ աշխատանքը։ Այդ կադրերի նկատմամբ վստահությունը զուգորդելով հանձնարարված գործի հանդեպ բարձր պահանջկոտության հետ, կուսակցությունն անհրաժեշտ է համարում զգալիորեն բարելավել նրանց ուսուցումն ու կողմնորոշումը ներքին և միջազգային կյանքի հրատապ պրոբլեմների նկատմամբ։

Գաղափարախոսական կադրերի բազմամիլիոնանոց բանակը վայելում է



կուսակցության և ժողովրդի խոր հարգանքն ու սերը։ Դրանք այն մարդիկ են, որոնք իրենց ուժը, գիտելիքներն ու ընդունակությունները նվիրաբերում են մասսաների քաղաքական լուսավորման գործին, նրանց մեջ բարոյական վսեմ հատկությունները դաստիարակելուն, մեր ժողովրդի հոգևոր ու քաղաքական կուլտուրայի բարձրացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարումը բարդ, հիրավի ստեղծագործական գործ է։ Եվ մենք՝ կոմունիստներս, ոչ մի րոպե չպետք է մոռանանք լենինյան պատգամը. «Անպայման ավելի առաջ գնանք, անպայման ավելի շատ բան ձեռք բերենք, անպայման ավելի հեշտ խնդիրներից անցնենք ավելի բարդ խնդիրների։ Առանց դրան,— շեշտում էր Լենինը,— ոչ մի առաջընթաց ընդհանրապես հնարավոր չէ, անհնարին է նաև առաջընթացը սոցիալիստական շինարարության մեջ»։ Այդ են մեզ պարտավորեցնում ստեղծագործական, մշտապես զարգացող մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով տոգորված Կենտկոմի որոշման բովանդակությունն ու ոգին, դրան օժանդակում է նաև երկրում գոյություն ունեցող քաղաքական նպաստավոր իրադրությունը։

Ընկերնե՛ր։ Չկա՛ ավելի ազնիվ խնդիր, քան կուսակցության խոսքը մասսաների շրջանում տարածելը, միլիոնավոր մարդկանց մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին հավատարմության, կոմունիզմի անմահ գաղափարներին նվիրվածության ոգով դաստիարակելը։ Մենք իրավամբ ասում ենք. կոմունիստական դաստիարակությունը կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատն է։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործումը, աշխատավորների դաստիարակության ուղղությամբ ծավալված գործունեության կատարելագործումը կնպաստեն մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական ամբողջ աշխատանքի մակարդակի բարձրացմանը, որը նպատակամղված է նոր հաջողությունների ձեռքբերմանը կոմունիստական շինարարության ասպարեզում։

Թույլ տվեք, թանկագին ընկերներ, ամբողջ հոգով նոր, մեծ հաջողություններ մաղթել ձեզ և ի դեմս ձեր՝ գաղափարախոսական ճակատի բոլոր աշխատողներին։ (Երկարատև ծափահարություններ)։

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀԱՂԹԱՐՇԱՎԸ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխությունը, որը բոլորում է իր 62 տարին, XX դարի գլխավոր իրադարձությունն է. այն նշանավորեց մարդկային հասարակության պատմության նոր դարագլխի սկիզբը և իր առաջ քաշած ու լուծած պրոբլեմներով հիրավի անգնահատելի նշանակություն ունի: «Համաշխարհային պատմության իրադարձություններից ոչ մեկը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մարդկության համար այնպիսի խոր, տևական հետևանքներ չի ունեցել, որքան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Հոկտեմբերյան ամպրոպի փայլատակումները լուսավորեցին շատ երկրների ժողովուրդների ապագայի ճանապարհը: Պատմությունը առաջ գնաց բառացիորեն յոթմղոնանոց քայլերով» (Մեծ Հոկտեմբերը և մարդկության առաջադիմությունը, «Հայաստան» հրատ., 1977, էջ 17):

Արմատապես տարբերվելով բոլոր նախորդ հեղափոխություններից, Հոկտեմբերը տապալեց կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը, հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, աշխարհի մեկ վեցերորդ մասում վերացրեց կապիտալիզմը, ոչնչացրեց մարդու կողմից մարդու շահագործումը, սոցիալական ու ազգային ճնշումը, ուղի հարթեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար:

Հոկտեմբերի հաղթանակը սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության հաստատումն է: Պատմական քննություն բռնեց մարքս-լենինյան ուսմունքը կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաստատման անխուսափելիության մասին, հեղափոխության և նոր հասարակարգի կառուցման ընթացքում կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող բանվոր դասակարգի ավանգարդային դերի, պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար մղվող պայքարում այդ դիկտատուրայի ունեցած դերի, սովետների՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի ձևի և իշխանության ժողովրդապետության օրգանների, սոցիալիստական դեմոկրատիայի, ազգային հարցի լուծման ուղիների մասին:

Հոկտեմբերյան հեղափոխությունը ճեղքեց համաշխարհային իմպերիալիզմի ճակատը և նոր դարաշրջան բացեց մարդկության պատմության մեջ— կապիտալիզմի կործանման, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը: Այն մեծ չափով արագացրեց պատմական իրադարձությունների ընթացքն աշխարհում: Հոկտեմբերի գաղափարները տարածվեցին աշխարհով մեկ, դրանք ժողովուրդներին պայքարի հանեցին ընդդեմ շահագործողների, հանուն իրենց ազատության ու անկախության: Հոկտեմբերի նվաճումները մեր մոլորակի բոլոր աշխարհամասերում հեղափոխական վերափոխումների հզոր ազդակ հանդիսացան: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը շարունակությունն է աշխարհի այն հեղափոխական նորացման, որի հիմքը դրեց Հոկտեմբերը:



Հոկտեմբերյան հեղափոխությունը շրջադարձ նշանավորեց ազգային-ազատագրական շարժման զարգացման գործում և գաղութային սիստեմի ճգնաժամի սկիզբը դրեց: Այն հսկայական հեղափոխականացնող ազդեցություն գործեց աշխարհի բոլոր ժողովուրդների վրա, արթնացրեց ճնշված ազգություններին՝ ակտիվ քաղաքական կյանքի կոչելով աշխատավորության լայն խավերին, նպաստեց միջազգային պրոլետարիատի համախմբմանը: Հոկտեմբերը ազդակ հանդիսացավ ներկայիս համաշխարհային կոմունիստական շարժման, որը դարձել է մեր ժամանակի մեծագույն քաղաքական ուժը: Հեղափոխության հաղթանակի և սովետական պետության ստեղծման շնորհիվ մարդկությունը ձեռք բերեց հուսալի հենարան՝ զավթողական պատերազմների դեմ, հանուն խաղաղության ու ժողովուրդների անվտանգության իր մղած պայքարում:

Մեծ Հոկտեմբերի տարեդարձը Սովետական Միության ժողովուրդների, սոցիալիստական համագործակցության երկրների ու մեր մոլորակի ողջ առաջադիմական ուժերի ինտերնացիոնալ տոնն է:

Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը Հոկտեմբերի 62-ամյակը նշում են աշխատանքային ու քաղաքական խանդավառության պայմաններում: Ժողովրդական ստեղծագործությանը հեղափոխության հաղորդած այն մեծ թափը, որի մասին իրավացիորեն նշում էր Վ. Ի. Լենինը, այսօր իր արտացոլումն է գտնում մեր ժողովրդի մեծագործություններում, տասներորդ հնգամյակի առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների կատարման ու գերակատարման համաժողովրդական պայքարում, արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման, Սիբիրի ու Հեռավոր Արևելքի հարստությունների յուրացման, ՌՍՖՍՀ ոչ սևահողային շրջանների կերպարանափոխման, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի նոր բարձունքների նվաճման համար մղվող պայքարում: Վկայարի են մեր երկրի նվաճումները, բարձր զարգացած ինդուստրիայի և սոցիալիստական գյուղատնտեսության երկրի հասումները: Ընդամենը երկուսուկես աշխատանքային օրվա ընթացքում ՍՍՀՄ-ում այժմ թողարկվում է նույնքան արտադրանք, որքան ամբողջ 1913 թվականին: Այժմ մեր արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը գերազանցում է քառորդ դար առաջ ամբողջ աշխարհում թողարկված արտադրանքի մակարդակը:

Սովետական Միության արդյունաբերության աշխատողները, սոցիալիստական մրցություն ծավալելով ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 62-րդ տարեդարձի, տասներորդ հնգամյակի չորրորդ տարվա ինն ամիսների ընթացքում ապահովեցին արտադրության հետագա զարգացումը: Արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցված, կատարել է արտադրանքի իրացման պլանը: Արտադրության աճը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, կազմել է 3,4 տոկոս: Օրական միջին արտադրությունն ավելացել է 3,7 տոկոսով: Աշխատանքի արտադրողականությունն աճել է 2,4 տոկոսով. դրա հաշվին է ստացվել արդյունաբերական արտադրանքի աճի մոտավորապես երեք քառորդը: Աճել է շահույթը:

Որոշ չափով բարելավվել են մի շարք ճյուղերի աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները և թողարկվող արտադրանքի որակը: Յուրացվել և սկսվել է ավելի քան երկու հազար նոր արտադրատեսակների թողարկումը, արտադրությունից հանվել են մի շարք հնացած ապրանքներ: Որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ծավալը անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ մեծացել է 23 տոկոսով:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը բախտորոշ եղավ օրհասական վիճակում գտնվող հայ ժողովրդի համար. այն նրան մեկընդմիշտ փրկեց սոցիալ-տնտեսական ու ազգային ճնշումից և նրա առջև բացեց հասարակական կյանքի բոլոր բնագավառներում շեշտակի առաջընթացի լայն ասպարեզ:

Լրանում է 59-րդ տարելիցը պատմական այն օրվա, երբ Հայաստանի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունը հերոսական 11-րդ կարմիր բանակի օգնությամբ, բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ տապալեցին դաշնակների ատելի տիրապետությունը և երկիրը հռչակեցին սովետական: Նորածնունդ Հայաստանին՝ նրա առաջին իսկ օրերից, օգնության ձեռք մեկնեց Սովետական Ռուսաստանը, անձամբ Վլադիմիր Իլյիչ Լենինը: Անցած 59 տարիներին անճանաչելիորեն փոխվել է հանրապետության դեմքը: Եղբայրական հանրապետությունների օգնությամբ Սովետական Հայաստանը դարձել է ծաղկուն, դինամիկ զարգացող հանրապետություն, որտեղ կառուցվել են ժամանակակից սարքավորումներով հագեցած ավելի քան 500 արդյունաբերական ձեռնարկություններ: Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում 5 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրվում, քան ամբողջ ցարական Ռուսաստանում: Հանրապետության տեխնիկական բուռն առաջընթացի խորհրդանիշ կարող է ծառայել Հայաստանի ատոմային էլեկտրակայանը, որի երկրորդ հերթը ևս շուտով կգործարկվի: Եվ դա այնտեղ, ուր առաջներում ներմուծվում էր ամեն բան, նույնիսկ սովորական մեխը: Այսօր Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը գերազանցում է 1913 թ. մակարդակը ավելի քան 336 անգամ: Յոթ ժամում թողարկվում է այնքան արտադրանք, որքան ամբողջ 1913 թվականին, և յուրաքանչյուր 8 օրում այնքան, որքան արտադրվել է 1940 թվականին: Հանրապետությունում այժմ թողարկվում են ճշգրիտ սարքեր ու հաստոցներ, հաշվիչ մեքենաներ, էլեկտրատեխնիկական սարքեր, արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը վկայող այլ արտադրանք:

Հայկական ՍՍՀ-ում բուռն զարգացում են ապրում երկաթուղային, ավտոմոբիլային ու օդային տրանսպորտը, կապը: Հանրապետությունում աճել է նոր բանվոր մարդը՝ առաջավոր հասարակական հայացքների, բարձր կուլտուրայի և պրոֆեսիոնալ գիտելիքների կրողը: Սովետական բանվոր դասակարգի մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի փառապանծ բանվոր դասակարգը, իր շարքերում այսօր ունի 800 հազար մարդ:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվել է խոշոր, բազմաճյուղ սոցիալիստական գյուղատնտեսություն, որի համախառն արտադրանքի ծավալը ներկայումս հասնում է շուրջ 800 միլիոն ռուբլու: Այսօր հանրապետության 755 կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրվում է 3,4 անգամ ավելի խաղող, 5 անգամ շատ ծխախոտ, 12 անգամ ավելի բանջարեղեն, 5—6 անգամ ավելի կաթ, միս, քան նախապատերազմյան 1940 թվականին:

Հանրապետության հողագործները կերպարանափոխել են երբեմնի անկենդան աղուտներն ու քարքարոտ անապատները, դրանք դարձրել ծաղկուն դաշտեր, պտղատու և խաղողի այգիներ: Զգալի աշխատանք է կատարվել գյուղատնտեսության ինտենսիվացման ասպարեզում: Եթե 1940 թ. Հայաստանում կար ընդամենը 61 հազար հեկտար ոռոգելի տարածություն, ապա այժմ ջրովի հողերը կազմում են շուրջ 300 հազար հեկտար: Հանրապետության դաշտերում ներկայումս աշխատում են ավելի քան 12 հազար տրակտոր, 13 հազար բեռնատար ավտոմոբիլ, տասնյակ հազարավոր գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ: Վերջին տարիներին ստեղծվել են անասնապահական խոշոր համալիրներ: Արմատապես փոխվել են գյուղացու կյանքը, նրա կենցաղը, աշխատանքի բնույթն ու պայմանները:

Հանրապետության համակողմանի զարգացման գործում զգալի ավանդ է մուծում Հայաստանի ժողովրդական մտավորականությունը, որն ամենաակտիվ կերպով նպաստում է գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, կուլտուրայի ու արվեստի հետագա ծաղկմանը, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման՝ կուսակցության կուրսի պրակտիկ իրականացմանը, աշխատավորության լայն զանգվածներին ժողովուրդների բարեկամության, բարձր հայրենասիրության, հետևողական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հումանիզմի գաղափարներով դաստիարակելու գործին:



Եթե 1920 թ. Հայաստանի բնակչությունն ընդամենը 720 հազար էր, ապա ներկայումս այն անցել է 3 միլիոնից: Դա արդյունք է այն բանի, որ անշեղորեն աճում են մարդկանց ռեալ եկամուտները, բարելավվում բնակարանային-կենցաղային պայմանները, բժշկական սպասարկումը, սոցիալական ապահովությունը: Հանրապետությունում կյանքի միջին տևողությունը հասնում է 73 տարվա: Դա աշխարհում ամենաբարձր ցուցանիշներից մեկն է:

Մինչև 1920 թվականը Հայաստանի բնակչությունն իր ճնշող մեծամասնությամբ անգրագետ էր: Այժմ դպրոցներում, տեխնիկումներում ու բուհերում սովորում է Սովետական Հայաստանի յուրաքանչյուր երրորդ բնակիչը: 1522 հանրակրթական դպրոցներում սովորում է 631 հազար աշակերտ, որոնց կրթությամբ ու դաստիարակությամբ զբաղված են 44,2 հազար ուսուցիչներ:

Հեղափոխությունից առաջ Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն: Այժմ հանրապետությունում կա 13 բուհ, 65 միջնակարգ մասնագիտական հաստատություն, որոնցում սովորում է 112 հազար մարդ:

Սովետական Հայաստանը ժամանակակից գիտության հանրապետություն է: Ակնառու են հայ գիտնականների նվաճումները աստղաֆիզիկայի, տեսական ֆիզիկայի, տարրական մասնիկների ֆիզիկայի, հաշվողական տեխնիկայի, միկրոկենսաբանության, բիոքիմիայի բնագավառում:

Վերջին տարիներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի ձեռնարկած մի շարք գործնական միջոցառումների շնորհիվ ողջ երկրի հետ ներդաշնակ ռիթմով է զարգանում հանրապետության էկոնոմիկան, ապահովվում են նրա աճի բարձր տեմպերը: Երեք տարի անընդմեջ հանրապետությունը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Հանրապետության արդյունաբերությունը ժամկետից շուտ կատարեց նաև 1979 թ. ինն ամիսների սոցիալիստական պարտավորությունները և պլանից դուրս թողարկեց 60 միլիոն ռուբլու արտադրանք: Արտադրության աճը նախորդ տարվա ինն ամիսների համեմատությամբ կազմեց 7,8 տոկոս:

Սակայն արդյունաբերության առանձին օղակներում առկա է անկազմակերպվածությունը, ցածր է պետական ու պլանային կարգապահության մակարդակը: Մեզանում դեռևս չի կատարվում աշխատանքի արտադրողականության աճի պլանը: Շատ միավորումներ ու ձեռնարկություններ խախտում են պայմանագրային կոոպերացված մատակարարումների ժամկետները: 87 ձեռնարկություններ չեն կատարել համախառն արտադրանքի ծավալի պլանը՝ պակաս թողարկելով 26 միլիոն ռուբլու զանազան արտադրանք: Թերացումները շատ են նաև շինարարության բնագավառում: Զգալիորեն թերակատարվել են կապիտալ ներդրումների ծավալի, շինմոնտաժային աշխատանքների, հիմնական ֆոնդերի գործարկման երեք եռամսյակների պլանները: Տարունակաբար թերակատարվում են նոր տեխնիկայի ներդրման ու յուրացման պլանները:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշման առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու նպատակով անհրաժեշտ է ուժեղացնել կուսակցական վերահսկողությունը բոլոր օղակներում, ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացումը:

Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները քաջ գիտակցում են, որ Սովետական Հայաստանի հետագա ծաղկման ու բարգավաճման նկատմամբ ամենօրյա հոգատարություն ու ուշադրություն են ցուցաբերում Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը, անձամբ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը: Այդ են վկայում վերջին տարիներս ընդունված «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին», «Հայ-

կական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և նրա արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին», «Երևան քաղաքում մետրոպոլիտենի կառուցման մասին», Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու և դրա վերապրոֆիլացման, «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» հայտնի որոշումները, որոնք բոլորիս տոգորել են անհուն երախտագիտությամբ, հայրենանվեր աշխատանքի նոր պաթոսով։

Մեր կուսակցության, ողջ ժողովրդի գաղափարաքաղաքական կյանքում խոշոր իրադարձություն էր ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը, որը մի անգամ ևս շեշտեց սովետական մարդկանց գիտական աշխարհայացքով, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին անհուն նվիրվածությամբ տոգորելու կարևորությունը։

Սովետական Միությունում զարգացած սոցիալիզմի կառուցումը Հոկտեմբերի մեծ նվաճումն է, որն իր արտացոլումը գտավ աշխարհում առաջին համաժողովրդական պետության հիմնական օրենքում։ ՍՍՀՄ նոր սահմանադրությունն ընդհանրացրեց սովետական պետության սահմանադրական ողջ անցյալ փորձը և միաժամանակ այն հարստացրեց զարգացած սոցիալիզմի հասունները արտացոլող նոր բովանդակությամբ։

Զարգացած սոցիալիզմի հասարակության քաղաքական սիստեմի միջուկը կոմունիստական կուսակցությունն է, որի ղեկավար դերի աճը օրինաչափ է և հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքը։ Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կուսակցությունը որոշում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, գիտականորեն հիմնավորում կոմունիզմի համար սովետական ժողովրդի մղած պայքարը։ Կուսակցական ղեկավարությունն այն վճռական պայմանն է, որ հնարավորություն է ընձեռում բարձրացնելու սովետների դերը զարգացած սոցիալիզմի պայմաններում և լրիվ ծավալով իրականացնելու իսկական ժողովրդապետության ֆունկցիան։ Սովետները մեր երկրում եղել և մնում են պետական իշխանության քաղաքական հիմքը։ ՍՍՀՄ նոր սահմանադրությամբ դրանք կոչվում են ժողովրդական դեպուտատների սովետներ և արտացոլում են զարգացած սոցիալիզմի փուլին համապատասխանող այդ ներկայացուցչական օրգանների կառուցվածքի ու գործունեության դեմոկրատական սկզբունքները։

Կոմունիստական շինարարությունում կուսակցական ղեկավարման արդյունավետությունն ապահովվում է այն բանով, որ երկրի քաղաքական կյանքում կենտրոնական առանցք է դարձել բազմամիլիոն մասսաների ամենօրյա մասնակցությունը պետական ու հասարակական գործերի կառավարմանը՝ ֆաբրիկաներում ու գործարաններում մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների, կոլտնտեսականների ժողովների, ժողովրդական վերահսկողության օրգանների, բազմաթիվ հասարակական կազմակերպությունների միջոցով։

Զարգացած սոցիալիզմի բնորոշ առանձնահատկություններից են սովետական հասարակության քաղաքական սիստեմում ՍՄԿԿ-ի ղեկավար դերի ամրապնդումը, սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնումը, նրա իսկապես հումանիստական ուղղվածությունը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության միասնությունը։

Հոկտեմբերի հաղթանակը նշանավորվեց լենինյան խաղաղության դեկրետով, որի սկզբունքները առաջին իսկ օրվանից դրվել են մեր երկրի արտաքին քաղաքականության հիմքում։ Իմպերիալիզմի, գաղութատիրության ու նեոգաղութատիրության վարած լարվածության ուժեղացման ու սպառազինությունների մրցավազքի քաղաքականությունը լուրջ սպառնալիք է խաղաղությանը, ժողովուրդների անկախությանն ու ազգային-ազատագրական շարժման հետագա ծավալմանը։ ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական կառավարությունը հաստատակամորեն ու վճռական կերպով դրան հակադրում են կայուն խաղաղությունն



ու ժողովուրդների անվտանգությունն ապահովող ակտիվ միջազգային քաղաքականություն։ Սովետական Միության համառ, տևական ջանքերի շնորհիվ Վիեննայում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև ստորագրվեց ՍՍՍ—2 պայմանագիրը, որի հետ մարդկությունը մեծ հույսեր է կապում։ Վճռական հակահարված տալով «սովետական սպառնալիքի» մասին իմպերիալիստական շրջանների հերյուրանքներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը Բեռլինում հանդիսավորությամբ հռչակեց Սովետական Միության նոր նախաձեռնության մասին, որով մեր երկիրը պատրաստակամություն է հայտնում կենտրոնական Եվրոպայից միակողմանիորեն դուրս բերել 20 հազար զինվոր, 1000 տանկ և այլ սպառազինություն։ ՍՍՀՄ-ը պատրաստ է նաև կրճատել մեր երկրի արևմտյան շրջաններում տեղակայված միջին հեռավորության միջուկային հրթիռների քանակը, պայմանով, որ Արևմտյան Եվրոպայում լրացուցիչ չտեղադրվեն նման հրթիռներ։

Ավարտին է մոտենում տասներորդ հնգամյակը, որի պլանների անվերապահ կատարումը լայն հնարավորություններ կընձեռի բնակչության հարաճուն պահանջմունքներն առավել բարելավելու համար։ Հնգամյակի վերջին տարին համընկնում է սոցիալիստական հեղափոխության մեծ առաջնորդ, կոմունիստական կուսակցության ու սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-ամյակի և մեծ Հոկտեմբերի ծնունդ Սովետական Հայաստանի 60-ամյակի հետ։ Մեր հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները, կանգնելով սոցիալիստական մրցության նոր հերթափոխի, օգտագործելով էկոնոմիկայի աճի բոլոր ռեզերվները, վերացնելով եղած թերությունները, ամեն ինչ կանեն արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, ՍՄԿԿ XXV համագումարի վսեմ կանխագծումները, պատմական տարելիցների առթիվ ծավալվող սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու, մեր մեծ հայրենիքը ավելի հզոր ու բարգավաճ դարձնելու համար։

---

Դաստիարակությանը՝ կոմպլեքսային մոտեցում

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿՈՓՎԱԾՔԻ ՀԱՄԱՐ

**Վ. Ա. ՏՈՒՐՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

*ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ մարտական օգնականն է ու հուսալի ռեզերվը։ Կուսակցությունը միշտ մեծագույն վստահությամբ է վերաբերվել նրան ու բարձր գնահատել նրա ներդրումը նոր հասարակարգի ստեղծման և ամրապնդման գործում։ Արժեքավորելով կոմերիտականների ու երիտասարդության աշխատանքային նվաճումները, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում նրանց ներդրած ավանդը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում ասաց. «Կուսակցությունը հաստատ հավատում է, որ երիտասարդները, կոմերիտականները նոր փառավոր էջեր կգրեն կոմունիստական շինարարության տարեգրության մեջ»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 127*)։

*Մեր արդի իրականությունը կոմերիտմիությանը ներկայացնում է նոր, ավելի բարձր պահանջներ։ Ելնելով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կոմերիտմիության խաղացած դերի հույժ կարևորությունից՝ կուսակցությունը մշտական հոգատարություն է ցուցաբերում երիտասարդ սերնդի հոգևոր աշխարհի ձևավորման ու հարստացման, նրա կոմունիստական դաստիարակության գործի բարելավման նկատմամբ։ Այդպիսի հոգատարության վառ ապացույց է նաև «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Այն երիտասարդության դաստիարակության հետագա բարելավման բացառիկ նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որը գործողության ծրագիր է դարձել կոմերիտական կազմակերպությունների համար։ «Յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության կոնկրետ մարտական գործը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— պետք է դառնա պատանիների ու աղջիկների քաղաքական, աշխատանքային ու բարոյական կոփման ուժեղացումը, նրանց գիտելիքների, կուլտուրայի, պրոֆեսիոնալ վարպետության ձգտման դաստիարակումը, ժողովրդական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի դաստիարակումը»։*

*Զարգացած սոցիալիստական հասարակարգը երիտասարդության հոգևոր պահանջմունքների բավարարման, նրա կոմունիստական գիտակցականության ձևավորման առավել լայն հնարավորություններ է ապահովել։ Անշուշտ, դա չի նշանակում, թե աճող սերնդի գաղափարական, քաղաքական դաստիարակության հարցերը կարող են լուծվել ինքնաբերաբար։ Ընդհակառակը, օգտագործելով ընձեռած հնարավորությունները, պետք է առավել նպատակային և խորությամբ ներգործել պատանիների ու աղջիկների մտքերի ու սրտերի վրա, դաստիարակել կուսակցության ու հայրենիքի գործին անսահմանորեն նվիրված*



*մարտիկների սերունդ։ Սա է յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության գործունեության ելակետը։*

*Կոմերիտական կազմակերպությունների ծավալած գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջուկը եղել և մնում է երիտասարդության մեջ գիտական աշխարհայացքի ձևավորումը, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով նրա դաստիարակությունը։ Այս խնդրի լուծման վճռական գործոն է քաղաքական ուսուցումը։ Հանրապետության կոմերիտական կազմակերպությունները նկատելի հաջողությունների են հասել երիտասարդության քաղաքական և տնտեսագիտական կրթության գաղափարատեսական մակարդակի բարձրացման և ներգործունության ուժեղացման ասպարեզում։ Ուսուցումը դարձել է ավելի նպատակային ու արդյունավետ, ամրապնդվել է նրա կապը կյանքի, աշխատանքային կոլեկտիվների առջև ծառացած կոնկրետ խնդիրների լուծման հետ։ Ընդլայնվել է քաղաքական և տնտեսագիտական ուսուցման ցանցը։ 1978—79 ուստարում կոմերիտական քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության համակարգում ընդգրկվել էին ավելի քան 110 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ, ընթացիկ ուսումնական տարում նրանց թիվն զգալիորեն աճել է։*

*Կոմերիտական քաղաքական ուսուցման համակարգի հստակ և արդյունավետ գործունեությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե ովքեր և ինչպես են կուսակցության գաղափարները, նրա առաջադրած տնտեսական ու սոցիալական խնդիրները լուսաբանում ունկնդիրներին։ Ներկայումս կոմերիտական քաղլուսցանցի պրոպագանդիստների 96 տոկոսն ունի բարձրագույն ու թերի բարձրագույն կրթություն, ինչպես նաև անհրաժեշտ տեսական ու մեթոդական պատրաստականություն։ «Էլեկտրոն» գործարանի էջմիածնի մասնաճյուղում փորձված պրոպագանդիստի համբավ ունի ՀամԼԿԵՄ XVIII համագումարի պատգամավոր, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Սամվել Թադևոսյանը։ Պարապմունքը նա վարում է փաստական հարուստ նյութի օգտագործմամբ, ներշնչանքով։ Քաղխմբակի որոշ պարապմունքներ անցկացվել են հեղափոխության, Հայաստանի կոմերիտմիության պատմության թանգարաններում, պրակտիկա են դարձել ռեֆերատների պաշտպանությունը, հանդիպումները կուսակցության և աշխատանքի վետերանների հետ։ Այդ ամենն օգնում է ունկնդիրներին՝ ստացած գիտելիքները դարձնելու համոզմունք, գործունեության ելակետ, գիտակցելու իրենց դերը ընդհանուր աշխատանքում։*

*Սակայն երիտասարդության քաղաքական և տնտեսագիտական ուսուցման բնագավառում ձեռք բերված որոշակի հաջողությունները հիմք չեն տալիս ինքնահանգստացման համար։ «Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքականության իմացությունը սովետական մարդկանց մեջ պետք է վերածվի կոմունիզմի համար, խորթ գաղափարախոսության ամեն կարգի դրսևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց զարգացած սոցիալիզմի հրատապ պրոբլեմների լուծման համար»։*

*Երբ կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը գնահատում ենք ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների տեսանկյունից, ապա պարզորոշ երևում է, որ մենք դեռևս պատշաճ կերպով չենք լուծել գաղափարադաստիարակչական աշխատանքի բոլոր հրատապ խնդիրները և շատ անելիքներ ունենք այդ ասպարեզում։ Բնավ ամենուրեք չէ, որ հաղթահարված են ձևականությունը, զուտ լուսավորչական մոտեցումը քաղաքական ուսուցման գործում։ Առայժմ դեռ քիչ չեն ունկնդիրները, որոնց կրկին ու կրկին պետք է բացատրել քաղաքական հետևողական ու խոր ուսուցման անհրաժեշտությունը։ Այս թերությունները, անշուշտ, բացասաբար են անդրադառնում գաղափարախոսական գործունեության արդյունավետության հետագա բարձրացման վրա։ Ի՞նչ արդյունավետության մասին կարող է խոսք լինել, օրինակ, Ղափանի շրջանի ավտոբազայի կոմերիտական կազմակերպությունում, երբ ԼԿԵՄ անդամների գերակշռող մասը չգիտեր անգամ, թե որ քաղխմբակում էր ընդգրկված։ Իսկ Երևանի «Նոր տարազ» արտադրամիավորման 520 կոմերիտականներից անցյալ*

ուսումնական տարում ընդամենը 173-ն էին ներգրավված քաղաքական և տըն-
տեսագիտական ուսուցման համակարգում: Այս և նման թերություններ առկա
են նաև կոմերիտմիության Հրազդանի, Ամասիայի, Թալինի շրջանային կոմի-
տեների աշխատանքում, հանրապետության ժողովրդական տնտեսության
առանձին ձեռնարկություններում:
Կոմերիտականների մարքս-լենինյան ուսուցումը բարելավելու և կատա-
րելագործելու, պրոպագանդիստական կադրերի տեսական ու մեթոդական մա-
կարդակը բարձրացնելու նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը ձեռնարկել է մի շարք
գործնական միջոցներ. պարբերաբար անցկացվում են պրոպագանդիստական
ակտիվի հանրապետական և փնջային սեմինար-խորհրդակցություններ, կազմ-
վում են մեթոդական հանձնարարականներ կոմերիտական խմբակների ու սե-
մինարների գործունեության բարելավման համար, ընդլայնվում է բազային
խմբակների թիվը:
Հոկտեմբերի 1-ից սկսվեց քաղաքական ուսուցման և տնտեսագիտական
կրթության նոր ուսումնական տարին: Խմբակներում ու սեմինարներում պա-
րապմունքները տեղի ունեցան «Լենինիզմը մեր դարաշրջանի հեղափոխական
դրոշն է» լենինյան դասով: Պարապմունքներն անցկացվեցին կոմերիտական-
ների ու երիտասարդների բարձր ակտիվության պայմաններում, զեկուցումները,
արտադրության վետերանների ու երիտասարդ առաջամարտիկների ելույթները,
բացված ցուցահանդեսները պատմում էին այն մասին, թե երիտասարդ սե-
րունդը ինչպես է կյանքի կոչում լենինյան անմահ պատգամները, իրականաց-
նում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները:
Լուրջ նախապատրաստական աշխատանքներ են տարվել ՍՄԿԿ Կենտկոմի
և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտադրու-
թյան արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտե-
սական մեխանիզմի ազդեցությունն ուժեղացնելու մասին» որոշման խոր ու-
սումնասիրությունն ապահովելու համար: «Մասիս» արտադրական միավոր-
ման, Լենինականի «Ստրոմմաշ» գործարանի, «Նաիրիտ» գիտաարտադրական
միավորման և բազմաթիվ այլ կազմակերպություններում պարապմունքներից
առաջ կազմակերպվել են դասախոսություններ, զրույցներ, հարց ու պատաս-
խանի երեկոներ՝ նվիրված ներկա փուլում կուսակցության տնտեսական քա-
ղաքականության հիմնական խնդիրներին:
Ընդհանուր առմամբ այս ուսումնական տարում 120 հազարից ավելի կոմե-
րիտականներ ու երիտասարդներ իրենց քաղաքական և տնտեսագիտական գի-
տելիքները կհարստացնեն կոմերիտական քաղաքական և տնտեսագիտական
ուսուցման խմբակներում ու սեմինարներում, մոտ 28 հազար երիտասարդներ
ընդգրկված են կուսակցական քաղաքական ուսուցման համակարգում:
Քաղաքական բանավոր ագիտացիան եղել և մնում է կոմերիտական կազ-
մակերպությունների գործունեության կարևոր օղակը: Ուղեցույց ունենալով
դասախոսական պրոպագանդայի և բանավոր քաղաքական ագիտացիայի հե-
տագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումները՝ կոմե-
րիտմիության քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերը որոշակի աշխա-
տանք են կատարել երիտասարդական լեկտորիումների, հարց ու պատասխանի
երեկոների, թեմատիկ բանավեճերի կազմակերպման ասպարեզում: ՀԼԿԵՄ
Երևանի, Լենինականի, Կիրովականի, Անիի, Նաիրիի քաղկոմ-շրջկոմներում
պրակտիկա են դարձել դասախոսական խմբերի փոխանակումները: Բազմաթիվ
գեղարվեստական և ագիտացիոն բրիգադներ են գործուղվում հանրապետության
գյուղական շրջանները:
Երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նրա գաղափա-
րական կոփվածքի գործում մեծ դեր ունի կատարելու «Կենսագործենք ՍՄԿԿ
XXV համագումարի որոշումները» լենինյան ստուգարքը, որի երրորդ փուլին
մասնակցում են շուրջ 560 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ: Ցա-
վոք, այսօր դեռևս կան կոմերիտական կազմակերպություններ, որոնք չեն
փորձում գործնականում մինչև վերջ բացել լենինյան ստուգարքի էությունը և
սահմանափակվում են միայն կոմպլեքսային պլանների ձևական ընդունմամբ:
Ստուգարքն անարդյունավետ է անցնում Կիրովականի բժշկական ուսումնարա-



նի, Ջարենցավանի № 62 շինվարչության, Դիլիջանի Կույբիշևի անվան սով-
խոզի, Մասիսի շրջանի Զորահովտի կոլտնտեսային կոմերիտական կազմակեր-
պություններում, որտեղ ստուգարքի մասնակիցների անձնական կոմպլեքս
պլանները միանման են, չեն առնչվում ձեռնարկության, արտադրամասի, ուսա-
նողական կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ:
Համամիութենական լենինյան ստուգարքի երրորդ փուլն ավարտվելու է
լենինյան անվանականչով: Անվանականչի նախապատրաստությունն ընթանում
է կոմերիտական բոլոր ստորաբաժանումները կազմակերպչորեն ամրապնդելու,
ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կատարելու համար կոմերիտականների
ու երիտասարդների ուժերը մոբիլիզացնելու նշանաբանով: Այն դառնալու է
յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության, ՀամԼԿԵՄ յուրաքանչյուր
անդամի հաշվետվությունը, ժողովրդի առջև՝ լենինյան անմահ պատգամների
իրականացման, տասներորդ հնգամյակի վիթխարի կանխագծումների կենսա-
գործման մասին:
Երիտասարդության գաղափարաքաղաքական դաստիարակության անբա-
ժանելի մասն է նրանց շրջանում սոցիալիստական հայրենասիրության և պրո-
լետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարների պրոպագանդումը, աճող
սերնդի դաստիարակությունը սովետական ժողովրդի հեղափոխական, մարտա-
կան և աշխատանքային ավանդույթների օրինակով: Եվ այսօր, հպարտանալով
մեր վերածնված սոցիալիստական Հայաստանով, խորապես գիտակցում ենք,
որ բոլոր նվաճումների, հաջողությունների համար առաջին հերթին պարտական
ենք կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքա-
կանությանը, ռուս մեծ ժողովրդին, Սովետական Միության բոլոր ժողովուրդ-
ների հետ անխախտ բարեկամությանը:
Ինտերնացիոնալիզմը և հայրենասիրությունը մեր երիտասարդության
համար դարձել են բարձր բարոյական վարքագծի նորմեր: Դրա մի նոր ու վառ
դրսևորումն էր Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-
ամյակի համաժողովրդական տոնակատարությունը: Այդ հոբելյանին նվիրված
կոմերիտական-երիտասարդական բոլոր միջոցառումները վկայեցին, որ Սո-
վետական Հայաստանի երիտասարդ սերունդը պահպանում ու բազմապատկում
է հայրերից ժառանգած բարեկամության ավանդույթները, դրանք հարստաց-
նում նոր բովանդակությամբ: Հայրենասիրական դաստիարակության գործում
դրական ներգործություն է ունենում «Իմ հայրենիքը ՍՍՀՄ-ն է» տուրիստական
արշավը, որն անցկացվում է սովետական ժողովրդի հեղափոխական, մարտա-
կան և աշխատանքային փառքի վայրերով:
Կուսակցությունը պարտավորեցնում է մեզ՝ կոմերիտական աշխատողնե-
րիս, երիտասարդության մոտ դաստիարակել հպարտության զգացում դեպի
սոցիալիստական հայրենիքը, սեր և հարգանք մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողո-
վուրդների նկատմամբ: Կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝
առավել ակտիվորեն պրոպագանդել սովետական ապրելակերպի, սոցիալիզմի
պատմական նվաճումների առավելությունները: Երիտասարդության ինտերնա-
ցիոնալ, հայրենասիրական դաստիարակության հարցերը մշտապես գտնվում են
կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կոմերիտական կազմա-
կերպությունների ուշադրության կենտրոնում:
Սոցիալական տարբեր սիստեմների այժմյան գաղափարական հակամար-
տության պայմաններում, երբ իմպերիալիզմի պրոպագանդան շարունակում է
զրպարտչական հարձակումները սոցիալիստական հասարակարգի, Սովետական
Միության, մեծ Հոկտեմբերի նվաճումների դեմ և ջանում է իշխել մարդկանց
մտքերի վրա, երիտասարդության գաղափարական կոփումը դառնում է ավելի
հրատապ ու անհրաժեշտ, օրվա անհետաձգելի լուծում պահանջող խնդիր:
Միանգամայն տեղին ու ժամանակին է «Գաղափարախոսական, քաղաքական-
դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտ-
կոմի որոշմամբ առաջադրված այս պահանջը, թե անհրաժեշտ է «...դասակար-
գային հակառակորդի քաղաքական և գաղափարական քայքայիչ գործունեու-
թյանը, սոցիալիզմի վերաբերյալ նրա չարամիտ զրպարտությանը հակադրել
մեր շարքերի անսասան համախմբվածությունը, հզոր, գաղափարական միաս-

նությունը, յուրաքանչյուր սովետական մարդու խորին համոզվածությունն ու քաղաքական զգոնությունը, հայրենիքը, սոցիալիզմի հեղափոխական նվաճումները պաշտպանելու նրա պատրաստակամությունը»:

Չպետք է մոռանալ, որ հենց այն կոլեկտիվներում, որտեղ թույլ է քաղդաստիարակչական աշխատանքը, գաղափարապես չկոփված անհատի վրա իր ազդեցությունը կարող է թողնել թշնամական գաղափարախոսությունը:

Աճող սերնդի կոմունիստական համոզվածության ձևավորման, աշխատանքային ու բարոյական դաստիարակության գործում կարևոր դեր է վերապահված դպրոցին: Ուսումնական ողջ պրոցեսը, արտադպրոցական աշխատանքի համակարգը վիթխարի դեր են խաղում քաղաքացու լինելիության պրոցեսում: Այստեղ հարկ կա խոսել վերջին տարիներին նկատվող մի երևույթի մասին, որը հաճախ աչքաթող են անում կոմերիտական կազմակերպությունները: Խոսքը դպրոցի պիոներական-կոմերիտական ակտիվի կազմում տղաների թվի աստիճանական նվազման մասին է: Պատճառն այն է, որ դեռ դպրոցից սկըսած տղաները հասարակական նվազ ակտիվություն են հանդես բերում, քան աղջիկները: Մինչդեռ դպրոցն այն օղակն է, ուր ձևավորվում է ապագա քաղաքացու հասարակական ակտիվությունը, հատկանիշ, որի դաստիարակումը պետք է լինի ո՛չ միայն կոմերիտական կազմակերպությունների ու մանկավարժական կոլեկտիվների, այլև ընտանիքի հարազատ գործը:

Երիտասարդության գաղափարական համոզվածությունը, նրանց քաղաքական հայացքների կայունությունը, ակտիվ կենսադիրքորոշումը, նախ և առաջ դրսևորվում են հասարակական հանրօգուտ աշխատանքում: Միայն գաղափարապես կոփված, քաղաքականապես հասուն երիտասարդը կարող է գիտակցական, կոմունիստական վերաբերմունք դրսևորել աշխատանքի նկատմամբ: Այս իրողության կոնկրետ վկայությունը կարող է տալ սոցիալիստական մրցությունը, որի այժմյան վերելքը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, քաղաքական և աշխատանքային դաստիարակության սերտ միաձուլման ակնբախ արդյունքն է:

Հանրապետությունում ծավալված սոցիալիստական մրցությանն ակտիվորեն է մասնակցում երիտասարդությունը, որը հանդես է գալիս հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնություններով, ցույց տալիս հերոսական աշխատանքի հիանալի օրինակներ: Լայնորեն տարածվել է «Արդյունավետության և որակի հնգամյակին երիտասարդության խանդավառությունն ու ստեղծագործությունը» հայրենասիրական շարժումը, որը պատշաճ կերպով արժեքավորվեց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Տասներորդ հնգամյակի անցած երեք տարիներին համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու համար մեր հանրապետությունը և շատ կոլեկտիվներ արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Ուրախալի է նշել, որ աշխատանքային այդ հաջողություններում, կոմունիստների հետ միասին, իրենց արժանի ավանդն են ներդրել նաև կոմերիտականներն ու երիտասարդները: Դրա վկայությունն է նաև այն, որ 1978 թվականի արդյունքներով հանրապետության կոմերիտական կազմակերպությունը պարգևատրվել է «Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում ձեռք բերած հաջողությունների համար» ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով:

Հնգամյակի չորրորդ տարին ավարտվելուց դեռ երեք ամիս առաջ ավելի քան 1.900 երիտասարդ առաջամարտիկներ, 137 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ զեկուցել էին տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման մասին: Արձագանքելով «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման՝ Աշոտ Ավագյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի նախաձեռնությանը, բազմաթիվ բրիգադներ, կոմերիտականներ պարտավորվել են հնգամյակի պլանների կատարման մասին զեկուցել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի նախօրյակին՝ համամիութենական լենինյան անվանականչի օրերին:

Աշխատանքային հաջողությունները, ծնունդ առած շարժումներն ու նա-



խաձեռնությունները վկայում են երիտասարդ սերնդի գաղափարական հասունության, կուսակցության գործին անսահման նվիրվածության, հայրերի աշխատանքային փառքի էստաֆետը պատվով շարունակելու պատրաստակամության մասին:

Երիտասարդությանը պետք է դաստիարակել պրակտիկ գործերով, որպեսզի նա, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ամեն օր, ուզածդ գյուղում, ուզածդ քաղաքում վճռի ընդհանուր աշխատանքի այս կամ այն կոնկրետ խնդիրը, թող դա լինի ամենափոքրը, ամենահասարակը: Այսպիսի մթնոլորտում է միայն պատանու և աղջկա մոտ ամրապնդվում ու զարգանում քաղաքացիության զգացումը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի ու գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ: Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116):

Երիտասարդության գաղափարական դաստիարակությունն ինքնին բարդ խնդիրների միասնություն է, որի յուրաքանչյուր օղակը պահանջում է հետևողական աշխատանք կոմերիտական բոլոր ստորաբաժանումներում: Մեր կյանքը վկայում է, որ դեռևս կան առանձին երիտասարդներ, որոնք, լավատեղյակ լինելով հանդերձ սովետական ապրելակերպի սկզբունքներին, միշտ չէ, ցավոք, որ պրակտիկ կյանքում հետևում են դրանց, և հաշտվողականություն են հանդես բերում սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների նկատմամբ: Դա ոչ այլ ինչ է, եթե ոչ ճեղքվածքի առկայություն ստացած գիտելիքների ու պրակտիկ գործելակերպի միջև: Ինչպես նշված է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ՝ դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը զգալիորեն նվազում է այնտեղ, որտեղ խզում է առաջ գալիս խոսքի և գործի միջև, որտեղ ապահովված չէ կազմակերպական-տնտեսական գաղափարական աշխատանքի միասնությունը:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որքան կատարելագործվում է երիտասարդ մարդու գեղագիտական ճաշակը և ամուր է նրա բարոյական ոգին, այնքան կարճ է դեպի գաղափարական համոզվածություն, քաղաքացիական հասունություն տանող ճանապարհը: Այս իսկ պատճառով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ մեծ տեղ է հատկացված նաև երիտասարդության գեղագիտական դաստիարակության հարցերին: Մեր հանրապետությունում հետևողական աշխատանք է տարվում գեղարվեստական ինքնագործունեության զարգացման նպատակով: Այսօր ավելի քան 72 հազար կոմերիտականներ, պատանիներ ու աղջիկներ ընդգրկված են գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների կազմում: Որոշ չափով բարելավվել է ակումբային հիմնարկությունների ու կոմերիտական կազմակերպությունների աշխատանքային համագործակցությունը:

Ինչպես պահանջվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, երիտասարդ արվեստագետներին պետք է հաճախ մասնակից դարձնել կոմերիտմիության կոմիտեների սոցիալական պատվերների կատարմանը: Փորձը վկայում է, որ դա օգնում է արվեստում առաջին քայլերն անող երիտասարդին՝ կանգնելու ճիշտ ուղու վրա, դուրս գալու մանրաթեմայնության շրջանակներից, զգալու մեր օրերի զարկերակը, ամբողջության մեջ տեսնելու իր ժամանակակցին, նպաստելու նրա գաղափարական կոփվածքին: Հանրապետության կոմերիտական կազմակերպություններն այս ասպարեզում արդեն կուտակել են որոշակի փորձ: Բավական է հիշել քաղաքական պլակատի, երգիծական նկարների, երիտասարդական-կոմերիտական երգի, երիտասարդ գրողների լավագույն առաջին գրքի հանրապետական մրցույթները, որտեղ մրցանակների են արժանանում հիրավի գաղափարագեղարվեստական բարձրարժեք ստեղծագործություններ: Նման սոցիալական պատվերների մշակված համակարգ է դարձել «Տարվա լա-

վագույն ստեղծագործության համար» ամենամյա մրցանակների շնորհումը: Մրցանակների սահմանումը որոշակիորեն ակտիվացրել է հանրապետության երիտասարդ մտավորականության ստեղծագործական կյանքը:

Այսօր արդեն մենք կարող ենք նշել, որ որոշակիորեն բարձրացել է երիտասարդ արվեստագետների հասարակական-քաղաքական ակտիվությունը, ամրապնդվել է կապը կոմերիտական կազմակերպությունների, աշխատող, սովորող, ուսանող երիտասարդության հետ: Սակայն չպետք է մոռանալ, որ դեռևս քիչ են մեր երիտասարդության այսօրը ներկայացնող գեղարվեստական բարձրարժեք ստեղծագործությունները՝ իրենց դրական կերպարներով, որոնց ձգտեն նմանվել պատանիներն ու աղջիկները:

Գրականության և արվեստի երիտասարդ գործիչների առջև դրված է մեկ այլ խնդիր ևս: Գաղտնիք չէ, որ այսօր երիտասարդության ազատ ժամանակը կազմակերպելիս երբեմն հաշվի չենք առնում ժամանակի պահանջները, չենք ներդնում աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ: Այդ մասին են պատմում ՀԼԿԵՄ Կենտկոմում ստացված նամակները Շամշադինի, Իջևանի, Կրասնոսելսկի և մի շարք այլ շրջաններից: Նրանց հեղինակները գանգատվում են, որ մշակույթի օջախները չեն համապատասխանում իրենց կոչմանը, չեն գործում ըստ նախասիրությունների երիտասարդական ակումբներ, չեն կազմակերպվում կուլտուր-մասսայական համապատասխան միջոցառումներ: Ահա աշխատանքի բնագավառ, որն սպասում է ստեղծագործող երիտասարդության գործնական միջամտությանը:

Երիտասարդության գաղափարական կոփման խնդիրների անթերի իրականացման համար, ինչպես հստակորեն պահանջվում է ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշմամբ, անհրաժեշտ է մշտապես կատարելագործել կոմերիտական կազմակերպությունների գործունեության ձևերն ու մեթոդները, հասնել դրանց հետագա ամրապնդմանը: Այսօր հանրապետության յուրաքանչյուր վեցերորդ բնակիչը կոմերիտական է: Եվ դա է կանխորոշում ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմների գաղափարական գործունեության պատասխանատվությունը կուսակցության ու ժողովրդի առջև:

Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները, սկզբնական կոմերիտական կազմակերպությունները համառ ջանքեր են գործադրում է՛լ ավելի բարձրացնելու գաղափարական գործունեության արդյունավետությունը, տասներորդ հնգամյակի եզրափակիչ փուլի յուրաքանչյուր օրը նշանավորելու հարվածային աշխատանքով, արժանավայել գործերով դիմավորելու Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակը, Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակը:

ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման իրականացման նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը մշակել է միջոցառումների ծավալուն պլան: Նախատեսվում է անցկացնել բոլոր կատեգորիաների կոմերիտական աշխատողների շրջանավորված ուսուցում, կազմակերպել հասարակական-քաղաքական ընթերցումներ, բացել նոր լեկտորիումներ: Կգումարվեն գիտապրակտիկ կոնֆերանսներ՝ նվիրված ցուցադրական ագիտացիայի հետագա բարելավմանը, դասախոսական պրոպագանդայի ներգործունության ուժեղացմանը:

Որոշման իրականացման ասպարեզում կատարվող աշխատանքների մասին հաշվետվություն կտան արդյունաբերության, գյուղատնտեսության երիտասարդ առաջամարտիկների հանրապետական հավաքների մասնակիցները:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակին կնվիրվի հասարակական ստեղծագործական էստաֆետը, որին կմասնակցեն երիտասարդ արվեստագետներ նաև եղբայրական հանրապետություններից: Բոլոր միջոցառումներն ուղղված կլինեն երիտասարդության գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության հետագա ուժեղացմանը, յուրաքանչյուր երիտասարդ քաղաքացու ակտիվ կենսադիրքորոշման ապահովմանը:

---

# ԳՏՀ-Ն ԵՎ ԱՆՀԱՏԻ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ա. Մ. ԷԿՄԱԼՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ համակողմանի գնահատվել է կուսակցության գաղափարական գործունեությունը, նշվել այդ կարևոր գործում ձեռք բերված հաջողությունները, բացահայտվել ու խորապես վերլուծվել եղած թերությունները, ցույց են տրվել դրանց վերացման և մասսաների կոմունիստական դաստիարակության ասպարեզում գաղափարական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու կոնկրետ ուղիները:

Քաղաքական մեծ նշանակություն ունեցող այդ փաստաթղթում արծարծվել են նաև քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հրատապ խնդիրները: Որոշումը պարտավորեցնում է ապահովել պրոպագանդայի և ագիտացիայի գիտական բարձր մակարդակ, հաշվի առնել հասարակական զարգացման այն առանձնահատկությունները, որոնք կապված են գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության հետ: Այսօր հասարակական զարգացման օրենքների ու հեռանկարների գիտական ըմբռնումը, դրանց համոզիչ պրոպագանդումը օրգանապես կապված են գիտատեխնիկական հեղափոխության և հասարակական կյանքի վրա նրա ունեցած ազդեցության դիալեկտիկամատերիալիստական մեկնաբանման հետ:

Ինչպես հայտնի է, գիտատեխնիկական հեղափոխությունն արդեն դարձել է հասարակական զարգացման ամենածանրակշիռ գործոններից մեկը և հարաճուն ազդեցություն է ունենում ժամանակակից հասարակական կյանքի գրեթե բոլոր կողմերի վրա: Դրանով է բացատրվում մեր կուսակցության սևեռուն ուշադրությունը այդ նոր ֆենոմենի նկատմամբ: ՍՄԿԿ XXV համագումարում նորովի է արծարծվել գիտատեխնիկական հեղափոխության դերը զարգացման արդի փուլում: Այդ մեկնաբանությամբ գիտատեխնիկական հեղափոխությունը դրսևորվում է որպես ո՛չ միայն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր լծակ, այլև դրական վիթխարի գործոն և՛ սոցիալիզմի հասարակական հարաբերությունները կոմունիստականի վերաճելու պրոցեսի, և՛ նոր մարդու դաստիարակության, այսինքն՝ կոմունիստական շինարարության բոլոր հիմնական խնդիրների լուծման անհրաժեշտ պայման:

Նոր մարդու ձևավորման, անհատի համակողմանի և ներդաշնակ զարգացման պրոցեսի տեսական մշակումն ու պրոպագանդման գիտական բարձր մակարդակի ապահովումն անկարելի է առանց գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությունը հաշվի առնելու: Մարդու վրա ԳՏՀ-ի ազդեցության հետ կապված մեծ թվով պրոբլեմներից այստեղ կքննարկենք չորս հանգուցային հարց. ինչ կերպ և ինչ ուղղությամբ է ԳՏՀ-ն ազդում անհատի այնպիսի էական հատկանիշների վրա, ինչպիսիք են ստեղծագործական ունակությունը, սոցիալական ակտիվությունը, բարոյական սկզբունքները և ֆիզիկական կատարելությունը:

Հաշվետվությունները և ընտրությունները

կուսկազմակերպություններում

# ՏՆԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԻ ԳՈՐԾԵՐՆ ՈՒ ՀՈԳՍԵՐԸ

## ԱՐՏԱԴՐԱՄԱՍԵՐՈՒՄ ԱՆԴՈՐՐ Է...

Հաշվետու-ընտրական ժողովի նախօրյակին այցելեցի տնաշինական կոմբինատ: Ակումբի առջև ուշադրությունս գրավեցին կոմբինատի առաջավորների պատվո տախտակն ու կոլեկտիվի 1979-ի սոցիալիստական պարտավորությունները: Կարդում եմ. տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 26-ին, պլանից դուրս իրականացնել 100 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք, 38 շենքի փոխարեն մոնտաժել 42 շենք:

Մտնում եմ արտադրական հին մասնաշենքը, ուր ներքին պատերի պանելներ են պատրաստում: Այստեղ խաղաղ ու անդորր է. հոսքային գծի եզրերին պատրաստի ամրաններ կան, շուրջը՝ լռություն:

Այցելում եմ նաև նոր մասնաշենքը: Ամենուրեք նույն պատկերը. վերամբարձ կռունկները, բետոնախառնիչները, հոսքային գծերը, մյուս սարքավորումները անգործությունից ասես ննջում են ու դրա համար մեղադրում են՝ չգիտես ում... Պատճա՞ռը: Ֆոնդավորված երկաթն ու ցեմենտը չեն ստացվել, և երկու շաբաթ է՝ ագրեգատները գործում են թերբեռնված, դեսից-դենից ձեռք բերված նյութերով: Մինչդեռ կուսբյուրոյի քարտուղար Հ. Առաքելյանը, եռանդով լեցուն մի երիտասարդ, բարձրագույն կրթությամբ շինարար-մասնագետ, խորին համոզմունքով ասում է.

— Մեզ մոտ ոչ մի դժվարություն չի կարող խանգարել պլանների կատարմանը. կոլեկտիվն առողջ է, բանվորները՝ աշխատասեր, մասնագետները՝ բանիմաց, ունենք լավ ավանդույթներ, բազմիցս դրոշներ ենք շահել. մեզ խանգարողն ու ետ պահողը միայն ու միայն նյութատեխնիկական վատ մատակարարումն է...

## ԲԵՏՈՆԱԳՈՐԾ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Հաջորդ օրը, արդեն առավոտյան, արտադրության մարդկանց ու նրանց գործն անպայման տեսնելու ակնկալությամբ, ես նորից այցելում եմ կոմբինատ: Արտադրամասեր ինձ ուղեկցում է կուսբյուրոյի քարտուղարը: Վարչական շենքի դեմ-հանդիման տեղամասերից մեկն է՝ բաց երկնքի տակ: Այստեղ են կաղապարվում ու պատրաստվում բնակելի տների արտաքին ու ներքին պատերի պանելների մի մասը, աստիճանները: Ահա եռուռաջ է անում հզոր կամրջային վերամբարձ կռունկը ու միալար աղմուկով իջնում շրջապատի վրա: Խցիկում կոմունիստ Մ. Ադամյանն է: Նա ստիպում է հսկային՝ կատարել ցանկացած գործողություն: Եվ ցեմենտաշաղախն ու ամրանե կմախքը, ձուլվելով իրար, դառնում են պատ ու աստիճան:

— Մեր ակտիվ կոմունիստներից ու առաջավոր բանվորներից է, իր բարեխղճությամբ օրինակ է ծառայում,— կռունկավարին այսպես է բնութագրում կուսբյուրոյի քարտուղարը:

Գլխավոր արտադրամասի հոսքային չորրորդ գիծը գործում է: Միջին տարիքի երկու տղամարդ են սպասարկում: Կուսբյուրոյի քարտուղարը ծանոթացնում է. բետոնագործներ են՝ մեկը ՍՄԿԿ անդամ Բ. Գևորգյանը, քառասունն անց մի այր, մյուսը՝ ՍՄԿԿ անդամության թեկնածու Վ. Մինասյանը, նրանից երիտասարդ: Վերևակի հորաններ ու սանհանգույցի խցիկներ են պատրաստում: Հետաքրքրվում են պլանների կատարմամբ: Բ. Գևորգյանը ժպտալով պատասխանում է.

— Որքան շենքին հարկավոր է, այնքան էլ տալիս ենք՝ ամսական 150—160 հատ, պլան կատարելը հեշտ գործ է, բայց ցեմենտի պատճառով շատ դեպքերում անգործ ենք մնում կամ աշխատում օրվա կեսը...

Հոսքային գծի եզրից սկսվում է կոմունիստ Մ. Ջալալյանի ղեկավարած հարդարման բրիգադի աշխատատեղին: Բրիգադի մարդիկ ընդունում են կաղապարից դուրս եկած հորաններն ու խցիկները և կարգավորում, հարդարում. ներկում են պատերը, սալիկապատում հատակը և այլն: Օրվա արտադրանքի հարդարման գործը նույն օրն էլ ավարտում են:

Մարդ հոգով վեհանում է, երբ զրուցում է գործը սիրող այս բանվորների հետ, բայց և ակամայից զարմանում ու զայրանում ես, որ անկանոն մատակարարման պատճառով նրանք երբեմն ի վիճակի չեն լինում դրսևորել իրենց եռանդը, ուժերն ու հմտությունը:

Իսկ այստեղ, տնաշինական կոմբինատում, այդպիսի մարդիկ շատ կան, նրանց թվում և կոմունիստներ, որոնք քայլում են մրցության առջևում ու դժվարություններից չեն ընկրկում: Այդպիսին է Հրանտ Բալդրյանը: Նրա մասին կուսբյուրոյի քարտուղարն ասում է.

— Բրիգադավար էր № 2 արտադրամասում: Երբ արտադրական նոր մասնաշենքը շահագործման հանձնվեց, նոր տեխնիկան գործի գցելու համար հարկավոր էին փորձառու, բանիմաց մարդիկ, և կուսբյուրոյի որոշմամբ նրան ուղարկեցինք այնտեղ՝ որպես № 4 հոսքային գծի բրիգադավար: Ներքին պատերի պանելներ էր պատրաստում: Իսկ երբ արտաքին պատերի հոսքային գծում գործերը կաղում էին և շինարարները պահանջում էին արագացնել պանելների մատակարարումը, Հրանտ Բալդրյանին տեղափոխեցինք հոսքային № 1 գիծ:

Սակայն կոմունիստ Հ. Բալդրյանի նկարագիրը թերի կլինի, եթե չհիշենք նրան բնութագրող ևս մի քանի մանրամասներ: ՀԿԿ Շահումյանի շրջկոմի անդամ է, Երևանի քաղաքային սովետի դեպուտատ, ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեի անդամ: Գրեթե երկու տասնամյակ բետոնագործների բրիգադավար է: Նրա անբասիր աշխատանքն ու մեծ եռանդը նշվել են «Պատվո նշան» և «Աշխատանքային փառքի երրորդ աստիճանի» շքանշաններով, ՀԱՄԿԽ-ի պատվոգրով, «Սոցիալիստական մրցության հաղթողի» կրծքանշանով: Կոմբինատի պատվո գրքի առաջին էջում նրա անունն է գրանցվել: «Կոմբինատի վաստակավոր վետերան» կոչումը առաջինների թվում նրան է շնորհվել: Ճանաչված վարպետ-դաստիարակ է, ավելի քան 40 բետոնագործ է պատրաստել ու դաստիարակել: Նա ջերմ խոսքեր է ասում իր բրիգադի տղաների, կոմերիտական բետոնագործներ Սամվել Դալաքյանի, Գագիկ Սարգսյանի, Գագիկ Օհանյանի հասցեին:

Հրանտ Բալդրյանի օրինակը եզակի չէ: Կուսկազմակերպության 109 անդամներից ավելի քան 80-ը անմիջականորեն աշխատում են արտադրության ոլորտում: Բետոնագործներ են նրանք ու ամրանագործներ, շինարարներ ու մոնտաժողներ, կռունկավարներ ու ավտովարորդներ: Նրանց մատնահետքերը կան կառուցվող տներին, նրանց ներդրումը կա մայրաքաղաքի կառուցապատման մեծ գործում:

## ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼՈՎ ԶԼՈԲԻՆՅԱՆ ԵՂԱՆԱԿԸ

— Ութ շինմոնտաժային և մեկ հարդարման բրիգադ ունենք, բոլորն էլ աշխատում են Նիկոլայ Զլոբինի տնտհաշվարկային եղանակով: Հիանալի գործ են անում՝ և՛ արագ, և՛ բարձր որակով,— ասում է կուսբյուրոյի քարտուղար Հ. Առաքելյանը:— Անցած տարի 38 շենքի հզորության պայմաններում կոմբինատի կոլեկտիվը խոստացել էր 42 բնակելի տուն կառուցել, բայց շահագործման հանձնեցինք 44-ը: Այս տարի ևս 42 շենք արտադրելու և կառուցելու պարտավորություն ենք ստանձնել: Մինչև հոկտեմբերի կեսերը շահագործման ենք հանձնել 32-ը: Եթե նյութատեխնիկական մատակարարումը նորմալ լինի, պարտավորությունը հաջողությամբ կկատարենք:

Գլխավոր շինարարի պաշտոնակատար Ստ. Թորոսյանը լրացնում է քարտուղարի ասածը.

— Ըստ գրաֆիկի բրիգադը ինըհարկանի բնակելի տունը պետք է մոնտաժի 45 օրում, բայց մերոնք առավելագույնը 40 օրում են ավարտում: Իսկ հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Մելիք Պապոյանի ղեկավարած բրիգադը շենքերից մեկը մոնտաժեց 27 օրում. դա յուրատեսակ ռեկորդ էր: Ավելի վաղ եղել է մի այլ ռեկորդ՝ 30 օր: Նշանակում է՝ համաչափ մատակարարման դեպքում հնարավոր է շենքերը շահագործման հանձնել գրաֆիկից շուտ:

Մենք շինհրապարակներից մեկում ենք: Շինարարներն այս թաղամասը եռանկյունի են անվանում: Կողք-կողքի տեղադրված է ինըհարկանի երեք բնակելի տուն՝ յուրաքանչյուրը 36 բնակարանով: Այստեղ աշխատում է կոմունիստ Անդրանիկ Հարությունյանի ղեկավարած բրիգադը: Տներից երկուսն արդեն պատրաստ է, երրորդի վերջին հարկն են տեսքի բերում բրիգադի մարդիկ:

Աղմկում է աշտարակային վերամբարձ կռունկը: Երեսունհինգ մետր բարձրությունից կռունկավարն իր կամքն է թելադրում մեքենային, կառուցվածքներ ու անհրաժեշտ այլ նյութեր մատուցում մոնտաժողներին: Ես նկատում եմ, թե ինչպիսի համակ ուշադրությամբ է հետևում նա ճոպանից կախված ծանրությանը:

— Լավ կռունկավար է Խաչիկ Իսկանդարյանը,— ասում է Ստ. Թորոսյանը,— կոլեկտիվի հետ ներվել է: Պարույր Սարգսյանը, Կարլեն և Վաչիկ Հարությունյանները, Ռուբիկ Մկրտչյանը լեզու են գտել միմյանց հետ, դարձել մի ընտանիքի անդամ:

Դեպի Սովետական Հայաստանի 60-ամյակը

# ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Լ. Պ. ԴԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական
կրթության մինիստր

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ բոլորում է իր սոցիալիստական վերածննդի, նոր կյանքի հաստատման 60-ամյակը: Այդ պանծալի տարելիցը լույց խորհրդածությունների տեղիք է տալիս: Մենք կփավեինք մոլորակի բոլոր լայնություններով, կդառնայինք թանգարանային նմուշ, եթե մեզ ձեռք չմեկներ Սովետական Ռուսաստանը, մեր լեռնաշխարհը չթափանցեին լենինյան գաղափարները:

Այսօր Սովետական Հայաստանը մեր հզոր ու բազմազգ Միության կազմում հարաճուն վերելքով խոյանում է կոմունիստական քաղաքակրթության գագաթները, սեփական օրինակով տոգորում գաղութային լուծը թոթափած ժողովուրդներին՝ վստահ ընտրելու սոցիալիստական առաջընթացի ուղին: Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն է, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մարմնացումը:

Դարեր շարունակ զրկվելով պետականությունից՝ մեր ժողովուրդը հարազատ հողում հնարավորություն չուներ զարկ տալու կրթության ու դպրության գործի ծավալմանը և լույսի օջախներ էր ստեղծում գաղթաշխարհում: Հոկտեմբերով ազատագրված ու վերածնված Հայաստանն այժմ դարձել է նաև բազմաճյուղ մասնագետներ պատրաստող բարձրագույն ուսումնական հաստատություններ ունեցող հանրապետություն: Այդ գործում, ինչպես մեր մեծ Միության բոլոր հանրապետություններին, Հայաստանին ևս անգնահատելի օգնություն է ցույց տվել Սովետական Ռուսաստանը: Հայաստան են եկել լավագույն դասախոսներ, ուսումնական գործի կազմակերպիչներ:

Սովետական Հայաստանում բարձրագույն կրթության հիմնադրումն ու զարգացումն սկսվեցին մեր բուհերի առաջնեկի՝ Երևանի համալսարանի ստեղծմամբ, 1920 թ. դեկտեմբերին, որն այն ժամանակ ուներ ընդամենը 255 ուսանող, 23 դասախոս: Սովետական իշխանության անցած տարիների ընթացքում հսկայական չափով ընդլայնվել է բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցը: Այսօր Հայաստանն ունի 13 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 57.000 ուսանողներով: 10.000 բնակչին ընկնող ուսանողների թվով միութենական հանրապետությունների մեջ Հայաստանը գրավում է երրորդ տեղը Ռուսաստանի Ֆեդերացիայից և Լիտվայից հետո:

Հայաստանի բարձրագույն դպրոցներն անցած 59 տարիների ընթացքում պատրաստել են 189 հազար մասնագետներ, որի 49,2 տոկոսը վերջին ինը տարիների ընթացքում: Միայն իններորդ հնգամյակի և տասներորդի չորս տարիների ընթացքում դրանք պատրաստել են մոտ 26.000 ինժեներներ, 9.000-ից ավելի գյուղատնտեսության մասնագետներ, 35.000 մանկավարժներ, մոտ 4.500 բժիշկներ, 7.000-ից ավելի տնտեսագետներ և այլն:



Այժմ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, հասարակական-քաղաքական, մշակութային և գիտական կյանքի բոլոր ոլորտներում աշխատում են բուհերն ավարտած մոտ 150.000 մասնագետներ: Մեր հանրապետությունում յուրաքանչյուր 10.000 աշխատողից 1.350-ը ունի բարձրագույն կրթություն: Սա շատ բարձր և խոսուն ցուցանիշ է: Բարձրագույն կրթության սիստեմում իր ուրույն տեղն ու դերն ունի համալսարանական կրթությունը: Այսօր Երևանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր համալսարանի 13 ֆակուլտետներում 23 մասնագիտություններ են ստանում 7.719 ուսանողներ: Ավանդական մասնագիտությունների կողքին համալսարանն այսօր պատրաստում է գիտության նորագույն ուղղությունների՝ կիրառական մաթեմատիկայի, ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի, բիոֆիզիկայի, գեոֆիզիկայի, բիոքիմիայի և այլ մասնագետներ:

Հայաստանում ժողովրդական տնտեսության բուռն զարգացումը հարուցել է բարձրորակ տեխնիկական կադրերի մեծ պահանջ: Հայտնի է, որ հանրապետության արդյունաբերության ծավալը, 1940 թ. համեմատ, աճել է մոտ 35 անգամ: Կադրերի մեծ պահանջ ունի նաև խոշոր չափերի հասած կապիտալ շինարարությունը: Հայաստանում տեխնիկական մտավորականության պատրաստման դարբնոց և տեխնիկական մտքի զարգացման կենտրոն է Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը, որը բոլորում է իր գոյության 50 տարին: Բազմաճյուղ արդյունաբերություն ունեցող մեր հանրապետության ձեռնարկություններում, կառավարման բազմաստիճան համակարգի բոլոր օղակներում հայրենանվեր գործ են կատարում այդ ինստիտուտի սաները: Ուսանողների թվով այն Հայաստանի ամենախոշոր բուհն է, ունի 21.695 ուսանող: Ինստիտուտը մասնագետներ է պատրաստում տեխնիկայի բոլոր հիմնական ճյուղերի համար: Այն մասնաճյուղեր ունի Լենինականում և Կիրովականում: Իր գոյության 50 տարիների ընթացքում ինստիտուտը պատրաստել է 43.325 մասնագետներ:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թ. ապրիլի 16-ի որոշման համաձայն տնտեսագետ կադրերի պատրաստման որակի բարելավման նպատակով Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական և ապրանքագիտության ֆակուլտետների և Մոսկվայի կոոպերատիվ ինստիտուտի ֆակուլտետի մասնաճյուղի հիման վրա ստեղծվեց հանրապետության 13-րդ բուհը՝ Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտը, որն իր գործունեությունն սկսեց 1975 թ. հոկտեմբերին: Այստեղ այժմ 12 մասնագիտություններ են ուսումնասիրում մոտ 4.000 ուսանողներ:

Ժողովրդական կրթության ոլորտը բարձրորակ ուսուցիչներով ապահովելու հույժ շնորհակալ գործը հանրապետությունում իրականացնում են մանկավարժական 4 բուհեր՝ Խ. Աբովյանի անվան հայկական, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների, Լենինականի և Կիրովականի մանկավարժական ինստիտուտները: Մանկավարժներ է պատրաստում նաև համալսարանը:

Հայաստանում այժմ բուռն զարգանում է գյուղատնտեսությունը: Ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի համար բարձրորակ մասնագետներ են պատրաստում Երևանի գյուղատնտեսական և անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտները, ուր այժմ սովորում են մոտ 6.000 ուսանողներ:

Ժողովրդական առողջապահության կադրերի դարբնոցն է Երևանի բժշկական ինստիտուտը, որի շրջանավարտները նվիրումով են կատարում իրենց շնորհակալ դերը մեր աշխատավորության առողջության պահպանման, կուլտուրական կենցաղի արմատավորման և բժշկական գիտության զարգացման ասպարեզում: Ֆիզկուլտուրայի ինստիտուտի շրջանավարտները դառնում են մասսայական դպրոցների ֆիզկուլտուրայի դասատուներ, ինչպես և մարզիկներ:

մրցույթային ընդունելության 71 տեղ՝ 39 մասնագիտություններով։ Սակայն այդ տեղերը դեռևս լրիվին չեն օգտագործվում։ 1978 թվականին տրված 76 տեղերից օգտագործվեցին միայն 52-ը։ Նախորդ տարիների նման թերակատարվեցին հատկապես ռադիոկապի, անտառային տնտեսության, մելիորացիայի, պոլիգրաֆարդյունաբերության գծով նախատեսված պլանները։ Մինչդեռ այդ մասնագետների կարիքը մեր հանրապետությունը շատ խիստ է զգում։ Այդ խնդրում դեռևս գործնական օգնություն ցույց չեն տալիս համապատասխան մինիստրությունները, ինչպես և կոմերիտական մարմինները։ Ութ մասնագիտությունների գծով 22 տեղեր են նախատեսվել նաև Ադրբեջանի ու Վրաստանի բուհերում կոոպերացման կարգով մասնագետներ պատրաստելու համար։

Գաղտնիք չէ, որ առաջին կուրսերի ճիշտ համալրմամբ նույնպես զգալիորեն պայմանավորված է որակյալ մասնագետների պատրաստման հաջողությունը։ Բուհերում ընդունելության արդարացի կազմակերպումը չնայած դժվար, բայց հույժ կարևոր ու պատվավոր գործ է։ Դժվար, որովհետև մրցույթը շատ մեծ է։ Բավական է ասել, որ 1979 թվականին մեր հանրապետության միայն հանրակրթական դպրոցներն ավարտել են մոտ 50.000 պատանիներ ու աղջիկներ։ Եթե դրան ավելացնենք նախորդ տարիների շրջանավարտների (որոնք ժամանակին չեն ընդունվել) և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շրջանավարտների թիվը, պարզ կլինի, թե որքան շատ են բարձրագույն կրթություն ստանալ ցանկացողները։ Բուհերի դիմորդների թիվն ամեն տարի հասնում է մոտ 30.000-ի, մինչդեռ մրցույթային տեղերի թիվը չի անցնում 9.000-ից։

Կուսակցության XXV համագումարի առաջադրած աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացման պահանջը լրիվին վերաբերում է նաև մեր սիստեմին, որովհետև արտադրության բոլոր ոլորտներում աշխատանքի ու արտադրանքի բարձր որակը մեծ չափով պայմանավորված է մեր ուսումնական հաստատությունների պատրաստած մասնագետների որակով։

Որակյալ ուսուցում—որակյալ մասնագետ—որակյալ աշխատանք։ Ահա ինչու բարձրագույն դպրոցի խնդիրն է պատրաստել արդի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներին քաջատեղյակ, ապագայի տեխնիկային տիրապետելու, այն զարգացնելու ունակ մասնագետներ, որոնք կարողանան կազմակերպել բարձրարտադրողական ու որակյալ աշխատանք։ Այդ նպատակով իսկ ուսուցումը պետք է վարել համաշխարհային գիտության արդի մակարդակով։ ՍՍՀՄ բարձրագույն կրթության մինիստրությունն իր սիստեմի և գիտությունների ակադեմիայի գիտնականների ուժերով անընդհատ բարելավում, կատարելագործում է բոլոր մասնագիտություններին վերաբերող ուսումնական պլաններն ու առարկայական ծրագրերը։

Բուհերում փոխվում են նաև ուսուցման ձևերն ու մեթոդները, այժմ ավելի լայնորեն են կիրառվում հաշվողական տեխնիկան, ուսուցման տեխնիկական միջոցները։ Աճել է ուսումնական պրոցեսի տեխնիկական հագեցվածության մակարդակը։ Բարձրագույն ուսումնական հաստատությունները զինվել են էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայով, լինգաֆոնային կաբինետներով, ժամանակակից սարքերով ու սարքավորումներով, ուսուցման տեխնիկական միջոցներով (հեռուստատեսություն, կինո, ռադիո, ձայնագրություններ և այլն)։

Առանց ուսուցման նոր ձևերի ու մեթոդների կիրառման այսօր հնարավոր չէ բարձրացնել ուսուցման որակը։ Գնահատականների տոկոսները չէ, որ որոշում են ուսուցման և ուսման, ապագա մասնագետի որակը, այլ՝ ուսուցման բովանդակությունը, դրա գիտական մակարդակը։ Ընդլայնվում է և ուսումնական հաստատությունների ուսումնանյութական բազան։ Ամեն տարի կապիտալ շինարարության վրա ծախսվում է ավելի քան 2 միլիոն ռուբլի, մի այդքան էլ՝ սարքավորումներ, գույք ձեռք բերելու վրա։ Ավարտվել է կոնսերվատորիայի, պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի և Կիրովականի մասնաշենքերի առաջին հերթի շինարարությունը, սկսվել է գեղարվեստաթատերական ինստիտուտի կառուցումը Զանգվի ձորում, բարձրացել է պոլիտեխնիկական ինստիտուտի ռադիոէլեկտրոնիկայի մասնաշենքը, ավարտվել է համալսարանի լսարանային մասնաշենքի կառուցումը և այլն։ Այս ամենը, անշուշտ, նպաստել և



նպաստում է ուսուցման, հետևապես և մասնագետների պատրաստման գործի բարելավմանը։

Ուսուցման որակի բարձրացման էական պայմաններից մեկը պրոֆեսորադասախոսական կազմի որակական մակարդակի բարձրացումն է։ Այստեղ ևս ունենք դրական արդյունքներ։ 1972 թվականի հունվարի 1-ի դրությամբ հանրապետության բուհերում ակադեմիկոսները, գիտության դոկտորներն ու պրոֆեսորները կազմում էին 6,2, գիտության թեկնածուներն ու դոցենտները՝ 34,3 տոկոս, այսինքն՝ դասախոսական կազմի 40,5 տոկոսն ուներ գիտական աստիճան և կոչում, իսկ 1979 թվականի հունվարի 1-ի դրությամբ ակադեմիկոսները, գիտության դոկտորներն ու պրոֆեսորներն արդեն կազմում էին 7,2, գիտության թեկնածուներն ու դոցենտները՝ 41,2 տոկոս, այսինքն՝ գիտական աստիճան և կոչում ուներ դասախոսների 48,4 տոկոսը. Այսպիսով, գիտական աստիճան և կոչում ունեցող դասախոսների թիվն աճել է 7,9 տոկոսով։

1971—1978 թթ. ընթացքում մեր բուհերի դասախոսներից 134-ը պաշտպանել են դոկտորական, 770-ը՝ թեկնածուական դիսերտացիաներ։ Դասախոսական կադրերի պատրաստման գործում մեծ է ասպիրանտուրայի դերը։ Տասներորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում Հայաստանի բուհերի ասպիրանտուրան ավարտել են 313 հոգի։ Դժբախտաբար ցածր է ասպիրանտուրայի արդյունավետությունը։ Ավարտողների միայն 41 տոկոսն է պաշտպանում կամ ներկայացնում դիսերտացիա։ Այդ ցուցանիշը շատ ավելի ցածր է Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում (25,2 տոկոս)։ Դա հետևանք է այն բանի, որ դեռևս անբավարար է ասպիրանտների ընտրության, նրանց հետ տարվող աշխատանքի բարելավման գործը։ Բուհերի ռեկտորատները պարտավոր են վճռական միջոցներ ձեռնարկել ասպիրանտական ուսուցման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում մասնագետ կադրերի պատրաստման որակի հետագա բարելավման համար մեծ նշանակություն ունի ուսանողությանը որակյալ դասագրքերով ու ձեռնարկներով ապահովելու խնդիրը։ Անցած տարիների ընթացքում այս բնագավառում որոշ աշխատանք կատարվել է։ 1971—1978 թթ. բուհերի համար հրատարակվել է 91 անուն դասագիրք։ Սակայն այս թիվը ցույց է տալիս, որ կատարվածը դեռևս անբավարար է։ Ուսանողությանը դասագրքերով, ուսումնական և օժանդակ գրականությամբ ապահովելու են կոչված «Լույս» և համալսարանի հրատարակչությունները, մեր մինիստրության գիտամեթոդական կաբինետը, որոնք պարտավոր են խորագույն պատասխանատվությամբ վերաբերվել այս կարևոր գործին։ Անհրաժեշտ է ավելի ռացիոնալ օգտագործել նաև բուհերի ունեցած բազմացնող հարմարանքները։

Մինիստրության ենթակա բուհերում լուրջ ուշադրություն է հատկացվում գիտական գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Ընդլայնվել է գիտահետազոտական և փորձնական-նախագծային աշխատանքների ծավալը։ Եթե 1971 թվականին այն կազմում էր մոտ 2,5 միլիոն ռուբլի, ապա 1978 թ. ավելացավ 3,5 անգամ՝ հասնելով 8 միլիոն 68 հազար ռուբլու։ Գիտությանը հատկացված ծախսերի ծավալը հիմնականում աճեց տնտհաշվարկային աշխատանքների հաշվին։

Այժմ մինիստրության սիստեմի բուհերում գործում են 12 պրոբլեմային լաբորատորիաներ։ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի 1978 թվականի օգոստոսի 1-ի որոշմամբ Երևանի պետական համալսարանի ճառագայթային ֆիզիկայի պրոբլեմային լաբորատորիան վերակազմավորվել է Երևանի պետական համալսարանի խիտ միջավայրի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտի։ Գիտության զարգացման բնագավառում Երևանի պետական համալսարանի ծառայությունների պատշաճ գնահատումն էր այն, որ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1978 թվականի ապրիլի որոշմամբ Երևանի պետական համալսարանը դասվեց երկրի առաջատար գիտական բուհերի շարքը։

Ջանքեր են գործադրվում արագացնելու գիտական հետազոտությունների արդյունքների ներդրումը պրակտիկայում։ Այդ կապակցությամբ մեծ նշանա-

բորդ հնգամյակի կառույցներում՝ Ամուրի, Սախալինի, Տյումենի, Բելգորոդի, Արխանգելսկի, Նովգորոդի մարզերում, Ղազախական, Կիրգիզական հանրապետություններում և այլուր: Միայն 1978 թ. ամռանը հանրապետական շինարարական ջոկատը կատարել է 38 մլն 400 հազար ռուբլու աշխատանք, գերակատարելով արտադրական ծրագիրը 32,8 տոկոսով:

Արդի պայմաններում առավել կենսական է դառնում գիտական կառավարման սկզբունքների կիրառումը բարձրագույն դպրոցի ղեկավարման պրակտիկայում: Այս իրողությունը բուհերի վարչական, գիտաուսումնական համակարգի աշխատողներից պահանջում է հետևողականորեն ուսումնասիրել այդ պրոցեսի կառավարման հիմունքները, արդեն օրինաչափություն դարձած անընդմեջ կրթության միտումները, ուսուցման ու դաստիարակության առնչությունների դիալեկտիկան: Դասախոս—ուսանող պրոբլեմը բարդ է և հրատապ, ենթակա կատարելագործման ու զարգացման:

Մեր հանրապետությունում գործող 13 բուհերը գտնվում են 5, իսկ 64 տեխնիկումներն ու ուսումնարանները՝ 15 մինիստրությունների ու գերատեսչությունների տնօրինության տակ: Նման իրավիճակն ստեղծում է մասնագիտական ուսումնական հաստատությունների ապակենտրոնացված ղեկավարում, որը չի նպաստում ընդհանուր գործին: Անհրաժեշտ է ավելի ինտենսիվ դարձնել ուսուցումը, սերտորեն զուգակցել ապագա մասնագետների տեսական ու գործնական գիտելիքները, բացահայտել գիտության ու կրթության համակարգի բոլոր ռեզերվները: Միայն բուհական կյանքի կենտրոնացված ղեկավարության պայմաններում հնարավոր է լուծել գիտատեխնիկական պրոգրեսի առաջադրած խնդիրները:

Հանրապետության բարձրագույն դպրոցի աշխատողները, կենսագործելով կուսակցության ու կառավարության որոշումները, ջանք չեն խնայում անթերի կատարելու իրենց խնդիրները, պատրաստելու որակյալ քաղաքացի-մասնագետներ, կոմունիզմի գործին նվիրված գաղափարական մարտիկներ: Առաջնահերթ խնդիր է ուսանողությանն օժտել քաղաքական ու բարոյական բարձր կուլտուրայով, սերմանել սկզբունքային վերաբերմունք կոմունիստական բարոյականության նորմերի խախտումների, քաղքենիական-սպառողական տրամադրությունների և անցյալի այլ վերապրուկների դրսևորումների նկատմամբ, օգնել երիտասարդներին՝ տիրապետելու գաղափարական հակառակորդների դեմ պայքարելու, թշնամական-իմպերիալիստական պրոպագանդան, ամեն տեսակ ռևիզիոնիզմն ու օպորտունիզմը մերկացնելու մեթոդներին:

Հանրապետության ուսանող երիտասարդությունը, պրոֆեսորադասախոսական կազմը, բարձրագույն դպրոցի բոլոր աշխատողները հասարակական-քաղաքական բարձր գիտակցականությամբ ու գործնական արդյունքներով կնշեն հայ ժողովրդի սոցիալիստական վերածննդի 60-ամյակը, միահամուռ համախմբված հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, որի իմաստուն քաղաքականությունը մեր հասումների ու հաջողությունների հուսալի երաշխիքն է:

---



# ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆԻ ԳԼՈՒԽԳՈՐԾՈՑԻ ԱՌԹԻՎ

Եթե գրքում կյանք կա, այն ընդմիշտ կապրի մարդկանց համար:
*Մ. ՇԱՀԻՆՅԱՆ*

**Ա. Գ. ԱԴՈՅԱՆ**

## I

ՀԱՎԱՆԱԲԱՐ ՉԵՆՔ ՍԽԱԼՎԻ, եթե ասենք, որ բազմաբեղուն գրող Մարիետա Շահինյանի առավել քան վեց տասնամյակի ստեղծարար վիթխարի ջանքերի գլուխգործոցը՝ Լենինյան մրցանակի արժանացած Ուլյանովների ընտանիքը տետրալոգիան, իսկապես հուժկու մտքի ու վառ զգացմունքների մի կոթող է: Կոթող, որը հեղինակին հատուկ տրամաբանական վարպետությամբ օրգանապես ագուցված է նաև Լենինի աշխարհաշեն կենսագործունեությունն արտացոլող տասներկու կուռ ու դողարիկ ակնարկների և հոդվածների հետ: Սա ևս Մ. Շահինյանի՝ Լենինի հավերժական կերպարի զարմանալի ինքնատիպ ու շեշտված քնարական վերակերտումն է:

Փիլիսոփայական և հրապարակախոսական, գրական ու գեղարվեստական, պատմավավերագրական ու սոցիալ-հոգեբանական համահավաք այս ծավալուն երկասիրությունն իրավամբ կոչված է Լենինապատում, որը ծանրակշիռ ներդրում է համաշխարհային լենինապատումի գանձարանում:

Ահա թե ինչու գաղափարական-գեղարվեստական այդ համաձույլ բյուրեղն արժանացել է բարձրագույն գնահատանքի՝ լենինյան մրցանակի: Հեղինակի այս վեպի անսասան առանցքը մեծ Լենինի անչափելի իմաստնությունն է, աշխարհը կոմունիստաբար վերափոխելու նրա վեհագույն սխրանքը:

Մեր նպատակն է հայ ընթերցողին հուշել ուշի-ուշիով ընթեռնելու Մ. Շահինյանի տետրալոգիան ընդհանրապես, իսկ չորրորդ գլուխը՝ Չորս դաս Լենինից, հատկապես: Սա հեղինակի «ամենադժվարին և ամենահրապուրիչ» քնարական-փիլիսոփայական գիրքն է:

Գրքի առաջին իսկ էջում հեղինակն իրեն բնորոշ անմիջականությամբ ու անկեղծորեն շեշտում է, որ Պիտերում Հոկտեմբերը դիմավորող իր սերնդին երջանկություն վիճակվեց ականատես լինելու բոլշևիկյան կուսակցությանը հատուկ այն պրակտիկային, երբ Լենինի հրապարակած դեկրետներն անհապաղ գործարկվում էին կյանքի եռուզեռում: Եթե չմոռանանք այն կարևոր իրողությունը, որ այդ տարիներին տակավին երիտասարդ, մշտապես որոնող, երազող, անհանգիստ գրող Շահինյանն, իր իսկ խոստովանությամբ, «սիրում էր տրամաբանությունն ու պարզությունը,ատում մտքի խճճվածությունն ու մանվա-

գիծը խոշոր դեր է խաղում երկրի ողջ առաջընթացում: Այս հանգամանքը պարտավորեցնում է կոմունիստին սեփական վարքագծով միշտ օրինակելի լինել: Եվ դա իրականում երկրի կառավարմանը, համաժողովրդական կարգ ու կանոնի պահպանմանը նպաստող ազդակ է:

Լենինի ողջ կյանքը նո՛ր մարդու, նո՛ր աշխարհ կերտողի սքանչելի ու հրապուրիչ օրինակ է:

Գրքի Առաջին դասում հեղինակը համոզիչ փաստերով լուսաբանում է Լենին պրոպագանդիստի, հռետորի յուրահատուկ արժանիքները: Շահինյանը սրամտորեն ու վերլուծական հետևություններով վկայակոչում է ճապոնացի ականավոր կոմունիստ Սեն-Կատայամայի խոստովանությունը. Իր տեսած հռետորներից մեծագույնը՝ Լենինը, երեք ժամ շարունակ Կոմինտերնի կոնգրեսում հիպնոսել է ունկնդիրներին իր հմայիչ ճառով: Մ. Շահինյանը համամիտ է շոտլանդացի պատգամավոր Գալախերի հետ, թե Լենին հռետորի վարպետության գաղտնիքն այն է եղել, որ նրան ունկնդրողը տոգորվել է հաղորդվածի խոր բովանդակությամբ և իր ուշքն ու միտքը սևեռել Լենինի ասածի էության վրա, մոռանալով նրա հռետորական շարժուձևը: Եվ Մ. Շահինյանը դրանից հետո վճռել է, իբրև ագիտատոր, աշխատել լենինյան ոճով, որպեսզի ունկնդիրները խոսեն զեկուցման բովանդակության վերաբերյալ և ոչ թե իր անձի: Նա շատ գոհ է, որ իրեն հաջողվել է կիրառել Լենինի մեթոդը:

Այնուհետև Շահինյանը մի քանի էջում պատշաճ խորությամբ շարադրել է այն փիլիսոփայական զրույցը, որ ունեցել են XVIII դարի ականավոր մտածողներ Դիդրոն ու Դալամբերը մարդկային իմացության ակունքի վերաբերյալ: Իդեալիստներին հերքելիս Լենինը վկայակոչել է Դիդրոյի մատերիալիստական դրույթը, որ մտածող «ես»-ի ելակետը նրա ու իր մտքից դուրս, նրանից անկախ բազում «դու»-երի, օբյեկտիվ աշխարհի ռեալությունն է: Լենինի հետ զրուցող յուրաքանչյուր ոք զգացել է, որ ինքը ևս նրա պես մարդ է և ներքին ազատության զգացողությամբ է համակված:

Ականավոր գրողը շեշտում է, թե ղեկավար կոմունիստը պարտավոր է իմանալ, որ Լենինն իսպառ զերծ էր սնապարծությունից, օժտված էր շրջապատի մարդկանց խոր ճանաչողությամբ, վիթխարի կամքի ուժով և հոգեբանական ըմբռնողության զարմանալի ունակությամբ ու մանկավարժական տակտով: Եթե կոմունիստ պատասխանատու աշխատողը վատ հոգեբան է, ասում է Մ. Շահինյանը, նա տապալում է իրեն վստահված գործը և չի հասկանում իր գործունեության գլխավոր խնդիրը:

Բայց սա ամենը չէ: Իր խառնվածքով լավատես Լենինը մարդու մեջ նկատում էր նրան հատուկ լավագույն հատկանիշը: Իսկ կոմունիստը, իր դիրքի բերումով և անձնական օրինակով կոչված լինելով դաստիարակել մարդկանց, պետք է նկատի նրանց լավագույն հատկանիշները և ըստ այդմ ներգործի նրանց ներաշխարհի վրա: Նադեժդա Կոնստանտինովնան գրել է, որ Վլադիմիր Իլյիչը միշտ ունենում էր մարդկանցով հրապուրվելու ժամանակաշրջաններ. նկատեր մարդու որևէ դրական հատկանիշը և կկառչեր դրան: Նա կարողանում էր ո՛չ միայն արթնացնել մարդկանց սեփական արժանապատվության զգացումը, այլև խորացնել այն՝ որպես մեր ստեղծագործ պայքարի հուժկու խթան:

Լենինյան բարոյախոսությունը, մարդկանց լավագույն արժանիքները կյանքի կոչելով, նրանց ուսուցում է կոլեկտիվ ուժերով և տաղանդավոր անձանց յուրահատուկ ունակությունների ներդաշնակմամբ շարունակել կոմունիստական հասարակարգի կառուցումը:

Երկրորդ դասում հեղինակը նկարագրում է վտարանդիության այն ծանր տարիները, երբ Լենինը գերլարվածությամբ մաքառում էր կուսակցության գաղափարական անաղարտության ու հետևողական մարքսիզմի դեմ ծառացած ռևիզիոնիստների ու զանազան հակամարքսիստական խմբակների և հոսանքների դեմ: Այս դասը հեղինակն ավարտում է հետևյալ եզրակացությամբ. կգա ժամանակը, երբ ամենքս կսովորենք ո՛չ միայն խորհել, այլև ապրել ու զգալ Լենինի պես:

Անխոնջ գրողն անձամբ լինելով իր հերոսի՝ Լենինի, երբևէ եղած բոլոր վայրերում, մեզ տանում է Բրիտանական թանգարան-գրադարանը, ուր բավա-



կանին ժամանակ տքնել է Լենինը՝ մարդկային հանճարի դարավոր արգասիքներն ուսումնասիրելիս: Այս ժամանակաշրջանին է նվիրված գրքի Երրոդ դասը: Լենինի մտքի հետքերը որոնելիս նա խոսում է իր հերոսի հետ, վկայակոչում նրա իմաստությունները, ինքը ևս այդ առթիվ դրսևորում սեփական խոհերը: Անդրադառնալով Ռուսաստանից ստացված հաղորդումին, թե որոշ ընկերներ դժգոհ են գաղտնի ուղարկված գրականության քանակից ու մատչելիությունից, Լենինը զայրացած պատասխանել է. իսկ դուք կարողացե՞լ եք լիովին օգտագործել ինչ ձեզ ուղարկված է: Դուք պահանջում եք, որ ծամեն և ձեր բերանը դնեն: Իսկ դա անկարողության ու թուլության նշան է: Լա՛վ հիշեցեք, որ ոչ ոք ձեզ որևէ բան չի տա, եթե չկարողանաք վերցնել:

Մարիետա Շահինյանը հատկապես ընթերցողի ուշադրությունը հրավիրում է Լենինի հետևյալ մտքի վրա. մեզ խոր տառապանք է պատճառել այն գիտակցությունը, որ տնայնագործներ ենք պատմական այնպիսի ժամանակաշրջանում, երբ կարելի էր ասել՝ մեզ տվեք հեղափոխականների կազմակերպություն, և մենք կհեղաշրջենք Ռուսաստանը:

Առանձնապես հուզիչ և հույժ ուսանելի են գրքի այն էջերը, որոնք արտացոլում են Լենինի հոգեկան տառապանքները: Սակայն այդ ամենը կարդալուց հետո մենք ավելի ենք սիրում նրան ու հպարտանում, որ մարդկային նման հանճարի շարքային մարտիկներն ենք: Հիրավի, հեղինակի այս անզուգական երկասիրության մեծագույն արժանիքներից է և այն, որ նրա Լենինն իրոք կատարյալ մարդու տիպար է՝ մեծագույն մարտիկ ու մտածող: Զուր չի Մ. Գորկին գրել Լենինի մասին. Նա սիրում էր ծիծաղելին և ծիծաղում էր ողջ մարմնով, իրոք, հաճախ «լցվում էր» արցունքաբեր ծիծաղով... Թիկնեղ, մարմնեղ, Սոկրատի գանգով ու ամենատես աչքերով, նա տարօրինակ և հաճախ փոքր-ինչ ծիծաղաշարժ դիրք է ընդունում՝ գլուխը թեքում ետ և ուսին բեկած, ձեռքերի մատները խրելով կռան տակերը, բաճկոնից ներս: Այս կեցվածքում անուշ և զարմանալի ու ծիծաղելի, կարծես հաղթական-աքաղաղային ինչ-որ բան կար, և այդպիսի պահին խնդությունից նա ամբողջովին լույս էր ճառագում, այս անիծյալ աշխարհի գեղեցկագույն այդ մարդը, որին վիճակված էր հանուն սիրո հավերժացման իրեն զոհաբերել ատելանքին ու թշնամանքին (տե՛ս М. Горький. В. И. Ленин. Сборник «О Ленине». М., 1967, стр. 39):

Գրքի վերջին գլխում հեղինակն արտահայտել է իր դժգոհությունն ու զայրույթը Մ. Գորկու այն կարծիքի առթիվ, որ հայտնել է նա Վ. Ի. Լենինի ծննդյան հիսնամյակին (1920 թ.): Գորկին Լենինին համեմատել է Քրիստափոր Կոլումբոսի հետ: Այս համեմատությունը Շահինյանը համարում է անհիմն ու սխալ: «Գորկին յուրովի էր հասկանում մարդկանց, հաճախ ամենևին հաշվի չառնելով պատմությունը»,— նկատում է հեղինակը:

Վերջինիս հետաքրքրել է և այն իրողությունը, թե Գորկին ու Լենինը ինչու են սիրել միմյանց: Կրուպսկայան 1930 թ. գրել է Մ. Գորկուն. «Գիտե՞ք, Վլադիմիր Իլյիչը Ձեզ շատ էր սիրում... Երբ դուք եկել էիք, ես շատ էի ուզում խոսել Ձեզ հետ Իլյիչի մասին, պարզապես կնկա նման հեկեկալ Ձեր ներկայությամբ, մի մարդու ներկայությամբ, որի հետ Լենինն իր մասին ավելի շատ էր խոսում, քան որևէ մեկ ուրիշի հետ»:

Հայտնի է, որ Գորկին ջանացել է Բոգդանովին ու Լունաչարսկուն հաշտեցնել Լենինի հետ: Այս առնչությամբ Գորկին ասել է. «Մարդկանց հասկանում եմ, բայց նրանց գործերը չեմ հասկանում»: Իսկ Լենինը գրել է. «Առանց գործերը հասկանալու հնարավոր չէ մարդկանց հասկանալ այլ կերպ, քան... արտաքնապես»: Վկայակոչելով Լենինի այս հետևությունը Գորկու ասածի վերաբերյալ, հեղինակը նշում է, որ Լենինի սույն խորիմաստ դրույթով Գորկու խոստովանությունը լիովին ժխտվեց: Սակայն նրբանկատ ու վեհանձն Լենինը ցանկացել է հանգամանորեն զարգացնել այն, ինչ անձամբ համարել է արվեստի կարևորագույն չափանիշը և ավելացրել. «Այսինքն՝ կարելի է հասկանալ պայքարի այս կամ այն մասնակցի հոգեբանությունը, բայց ոչ նրա կուսակցական ու քաղաքական նշանակությունը» (էջ 256):

Այս մեջբերումից հետո Մ. Շահինյանը եզրակացնում է, որ իրականում, ըստ Լենինի, մարդկանց պրակտիկան է ճշմարտության չափանիշը, ապա՝ Ինձ

քաղաքական դիրքով,— և ոչ միայն իր ինքնատիպ տաղանդի ուժով ու փայլով,— այնքան բարձր էր կանգնած իր շրջապատից, որ Լենինը պարզապես չէր կարող նրան չնկատել ու չսիրել։ «Մաքսիմ Գորկին գրականության բնագավառում եղել է այն նույն «պրակտիկան», որի գոյությամբ հաստատվում էր մարքսիստական տեսությունը». «...բոլշևիկների հետ գրողի մերձեցման... ուժեղացող պրոցեսը ավարտվում է նրա՝ կուսակցության մեջ ընդունվելով, 1905 թվականի երկրորդ կիսամյակում»։

Շահինյանը սրամտորեն նկատում է, որ Գորկու՝ «Մարդկային «ես»-ը ակտիվ սկիզբ է» ...ձևակերպումը, իմ կարծիքով, ավելի ուժեղ, ավելի բովանդակալից ու պոտենցիալ է, քան նրա բազմահոլով «Մարդ՝ դա հպարտ է հնչում» ասույթը։

Ուսումնասիրելով Լենինի ու Գորկու կապերը՝ Մ. Շահինյանը նրբանկատորեն բնութագրել է նրանց հայացքների միջև եղած հակասությունը, ցույց տվել մեծ գրողի քաղաքական հայացքների էվոլյուցիան։ Այսպես, նա նշում է, որ 1916 թ. Լենինը գրել է Կապիտալիզմը ու երկրագործությունն Ամերիկայի Միացյալ Նահանգներում բրոշյուրը, որն ուղարկել է Գորկուն՝ հետևյալ տողերով. «Պատերազմական ժամանակի պատճառով ես ծայրաստիճան կարիք ունեմ վաստակի, ուստի կխնդրեի, եթե դա հնարավոր է և Ձեզ չափից ավելի դժվարություն չի պատճառի, արագացնել բրոշյուրի հրատարակման գործը» (В. И. Ленин, ПСС, т. 49, стр. 170)։ Գորկին «հավանաբար չի պատասխանել այդ խնդրանքին»։ Մինչդեռ նա կարող էր այն հրատարակել։ Լենինի ու Գորկու բարեկամության մեջ, գրել է Մ. Շահինյանը, ամենադաժանը և Գորկու կողմից մարքսիզմը չհասկանալու համար ամենաբնորոշը Գորկու նամակն է եղել Պյատնիցկուն, որով նա զգուշացրել է Պյատնիցկուն, որ վերջինս Ռուսաստանում չհրատարակի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմը։ Այս վերաբերմունքի հոգեբանական, ավելի ճիշտ՝ գաղափարախոսական արմատն այն է, որ աշխարհը հեղափոխականորեն վերակառուցող Լենինին Գորկին համարել է ֆատալիստ և պաշտպանել Բոգդանով-Բազարովյան հակալենինյան խմբակցությունը։ Մ. Շահինյանի այս իրավացի հայացքը հիմնավորվում է և այն իսկությամբ, որ Գորկին 1917 թ. փետրվարյան ժամանակավոր կառավարությանը հղած իր ուղերձում արտահայտել է, Լենինի կարծիքով, «ո՛չ միայն մանր բուրժուազիայի, այլև նրա ազդեցության տակ գտնվող բանվորների մի մասի խիստ տարածված նախապաշարմունքները» (В. И. Ленин, ПСС, т. 31, стр. 48—49). մի հանգամանք, որն անչափ դառնացրել է Իլյիչին։

Մարիետա Շահինյանը միաժամանակ գրել է, որ Լենինը երբեք «ձեռք չի բարձրացրել» Գորկու վրա, վերջինիս նկատմամբ տածած իր սիրո վրա։ Հիրավի, Լենինն է գրել անկեղծորեն. «Կասկած չկա, որ Գորկին գեղարվեստական վիթխարի տաղանդ է, որը շատ օգուտ է տվել և կտա համաշխարհային պրոլետարական շարժմանը։

Բայց ի՞նչ միտք ունի, որ Գորկին ձեռք զարնի քաղաքականությանը» (նույն տեղը)։

Մ. Շահինյանը արդարամտությամբ հիշատակել է, որ ամենախոր ապրումների պահին իսկ Լենինը չի կարողացել մնալ անդրդվելի Գորկու ժպիտի հանդեպ։ Նա խորհուրդ է տալիս Գորկուն. «արմատապես փոխեք իրադրությունը՝ և՛ միջավայրը, և՛ ապրելակերպը, և՛ զբաղմունքը, այլապես կյանքը կարող է վերջնականապես զզվելի դառնալ» (В. И. Ленин, ПСС, т. 51, стр. 27)։

Էականն այն է, որ այս տողերի հեղինակ Լենինը, սիրել է Գորկուն, ուսուցել նրան։ Իրականում, Գորկին ևս շատ պետք է եղել Լենինին, պնդում է Մ. Շահինյանը։ Քաղաքագետին արվեստարար է հարկավոր, ինչպես օդ, ինչպես հաց, կարդում ենք գրքում։ Այս մեծարժույթ երկասիրությունն ավարտվում է հետևյալ բնորոշ բնութագրմամբ. Լենինը կարողացել է ատել պայքարում, ինչպես դա հատուկ է մարդուն։ Եվ Լենինը կարողացել է սիրել, ինչպես դա հատուկ է մարդկային սրտին։ Իսկ եթե դա չլիներ, եթե նա ասկետ լիներ,— մարդկությունը չէր կարող այնպես ջերմորեն սիրել նրան՝ հարազատին ու մերձավորին, յուրայինին ու պետականին, ինչպես նա այժմ է սիրում Լենինին։

Միանգամայն իրավացի է Կոնստանտին Սիմոնովը՝ Մ. Շահինյանի Լենինապատումի մասին գրելով. սա հեղինակի երկերից ամենահետաքրքրականն է, տաղանդավորը, մաշտաբայինը, որն իրոք հետազոտական է, քրտնաջան որոնումների արգասիք։ Նրա որոնումներում դրսևորված է արվեստի տաղանդի չխամրող ջահելությունը, նրբանկատությունը, որը հիացմունք է հարուցում։ Մեր գրականության մարզում Մ. Շահինյանի գրական, գիտական, ժուռնալիստական ողջ գործունեությունն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ճշմարիտ օրինակ է։ Նա զարմանալի անձնավորություն ու մարդ է, որով, հիրավի, կարող է հպարտանալ սովետական կուլտուրան (տե՛ս «Известия», 1972 թ., մարտի 15)։

Մ. Շահինյանի Լենինապատումը, հեղինակի խոսքերով ասած, բարոյական այն աշխարհի ակունքների, այն հոգեկան մթնոլորտի էպոսն է, որում սկզբնավորվել ու զարգացել է Լենինի ուսմունքը։

Վերջացնելով մեր խիստ համառոտակի ասելիքը՝ կուզենայինք նշել հետևյալը. Մ. Շահինյանի Չորս դաս Լենինից երկասիրությունը սքանչելի և շատ հարուստ նյութ է էկրանավորման համար։ Այստեղ լենինյան հաղթանակած գաղափարաշարը վերակերտված է ամենավառ և ամենալիրիկական նրբերանգներով։ Եվ, իրոք, սա այն գիրքն է, որը կյանք ունի և ընդմիշտ կապրի մարդկանց համար։

IV

Անհրաժեշտ ենք համարում ասել, որ այս մեծարժույթ աշխատության հայերեն թարգմանությունը հաջողված չէ։ Այս իրողության պատճառը ո՛չ միայն լեզուներին անբավարար տիրապետելն է, այլև թարգմանչի սխալ, արատավոր մեկնակետը։ Սկզբից մինչև վերջ գիրքը թարգմանված է բառացիության, առերես հարազատության սկզբունքով։ Հիշենք, թե ինչ է գրել Մ. Գորկին այս առիթով. Թարգմանիչը պետք է իմանա ո՛չ միայն գրականության պատմությունը, այլև հեղինակի անձնավորության ստեղծագործական զարգացման պատմությունը. միայն այս դեպքում ավելի կամ պակաս ճշգրտությամբ կվերարտադրվի յուրաքանչյուր գրքի ոգին...

Սովետական ականավոր գրող Կ. Չուկովսկին տարիներ առաջ մի շատ օգտակար և ուսանելի գիրք է գրել՝ Թարգմանության արվեստը խորագրով։ Փորձենք կարճառոտ շարադրել այդ անվանի հեղինակի միանգամայն ընդունելի սկզբունքները։

Թարգմանության արվեստը,— գրել է նա,— փոքր-ինչ դառնում է գիտություն, միաժամանակ մնալով արվեստ։ Թարգմանության արվեստը զուգորդվում է թարգմանվող բնագրի ոճական յուրահատկությունների գիտական նկատառման հետ։

Յուրաքանչյուր թարգմանիչ իրեն է թարգմանում։ Նա պատճենող չէ, այլ հեղինակի ստեղծագործության մասնակիցը։

Ամենավատ թարգմանությունը տառացին է, բնագրի առոգանության նկատմամբ խուլ և կույր լինելը։ (Ընդգծումը մերն է— Ա. Ա.)։ Լավ թարգմանիչը թեև նայում է թարգմանվող բնագրին, միշտ խորհում է ռուսերեն ու միայն ռուսերեն, ոչ մի վայրկյան չի ներարկվում օտար լեզվի խոսելակերպի ներգործությանը, որը խորթ է մայրենի լեզվի շարահյուսության օրենքներին։ Ըստ իմաստի ու ոգու լինելով նույնական, դրանք իրենց շարահյուսական ձևով ամենևին նման չեն։ Սրան պետք է ձգտի թարգմանիչը։ Հարկավոր է, որպեսզի նրա թարգմանած յուրաքանչյուր նախադասություն ռուսերեն հնչի, ենթարկվելով ռուսաց լեզվի տրամաբանությանն ու գեղագիտությանը։

Անտարակույս, Չուկովսկու վերոբերյալ դատողությունները լիովին վերաբերում են մեզ ևս։ Հայերեն թարգմանվող գիրքը պետք է հնչի հայերեն։

Քառասունմեկ տարի առաջ, զրուցելով երիտասարդ պոետ Կ. Սիմոնովի հետ՝ նրա բանաստեղծությունների առնչությամբ և փայլուն ապագա կանխատեսելով նրա ստեղծագործությանը, երևելի գրող Կ. Պաուստովսկին գրել է. Այժմ, ցավոք, մայրենի լեզվի նկատմամբ հաճախ լավ ճաշակ չունեն նույնիսկ որոշ գրողներ ու պոետներ։ Սա վկայում է, որ գոյություն ունի իրական կյանքից երկարատև կտրվածություն, լիակատար անտարբերություն երկրի լեզվական

*հարստության նկատմամբ։ Ժողովրդայնության դարաշրջանում դա ո՛չ միայն մտքի խակություն, այլև հանցագործություն է։ Լրագրերի անհոգության պատճառով հետզհետե ավելի շատ ենք վարժվում այդ լեզվածուռիկությանը, որը հայտնի չէ թե ինչու է համարվում ռուսաց լեզու (տե՛ս* К. Паустовский. Наедине с осенью. М., 1972, стр. 171)։

*Եվ այսպես, համոզված ենք, որ Մ. Գորկու, Կ. Չուկովսկու և Կ. Պաուստովսկու վերոբերյալ մտորումներն ու խորհուրդները վերաբերում են մեր թարգմանություններին ևս։ Բարձրորակ թարգմանությունների ապահովման հոգսը համապետական է և հրատապ։*

Զորս դաս Լենինից *բազմաժանր, հարուստ մտորումների, փիլիսոփայական, վերլուծական, պատմական էքսկուրսների այդ սքանչելի գրքի թարգմանելը, իրոք, դժվարին է։ Պահանջվում էր և բանիմաց խմբագրում։ Թարգմանության նկատված իմաստային խեղաթյուրումներն ու լեզվական մեղանչումները խիստ դժվարացնում են այս հոյակապ ստեղծագործության ընթերցումը։*

*Թարգմանչի և հրատարակիչների ջանքերն ակնհայտորեն ցանկալի արդյունքը չեն տվել։ Այս եզրակացության հավաստիությունն են ապացուցում այն բազում սխալները, որոնց աննշան մասը զետեղում ենք հոդվածի վերջում։*

## ԼԵԶՎԱՌՃԱԿԱՆ ՍԽԱԼՆԵՐ

*...կերպարը... արտխտների վերարտադրություններում* մտել է մեր կյանքը *և միլիոնավոր սովետական մարդկանց առջև տեսանելիորեն* կանգնել *իր լայն ժեստով (էջ 17)*

...յուրացնել խելքի *հզոր* կենտրոնացում *(38)*

*Նրանցից սոցիալիզմ է* թափվում *(48)*

...*չարամիտ* քննադատություն է տալիս *(55)*

...*նա* ինքն է կտրվել *կուսակցության հետ* համերաշխությունից *(57)*

... մահառաջի դաս *(60)*

*Լոնդոնում այնպիսի* «անձրևականգնուկ» *էր (123)*

*Եվրոպայի գիտնականները կաժանններ են բա*ցել դեպի Նիզամու *ստեղծագործության* ըմբռնումը *(128)*

...*խորացել էի* Նիզամու մեջ... *(129)*

... մտնել նրա բնավորության մեջ *(132)*

*Գալով գրադարան,* ...ընկնում էր *իր սիրած պայմանների մեջ (139)*

...հարբում էինք *Մարքսի մաթեմատիկական տետրերի* շարադրանքից *(185)*

...*մենք* իզուր հեղափոխականի *շատ ուժեր ենք ծախսում (188)*

...մեզ կանգնեցնում է, *այդ* մեղադրանքի մոտ **(192)**

*Խոչընդոտը* կայանում է... անկախության մեջ *(200)*

*Կոլումբոսի այս ռոմանտիկ բնութագրի մեջ* գուցե՞ *արտահայտվել է հենց իր՝ Գորկու այն ժամանակվա* բանավիճողայնությունը, *Բոգդանովին ցույց տված նրա պաշտպանությունը (209—210)*

Բնակընտելանալով, *ես զգացի այդ քաղաքի... հմայքը (299)*

...սենյակի աշխարհիկից մեզ դուրս բերում լայնարձակություն *(306)*

...*դեմքը...* փայփայված *է (320)*

*Լիխտենշտադը* շատ է աշխատել *Գյոթեի* վրա *(323)*

Գորկին սայթաքում է անարխիզմի վրա *(330)*

*Բայց այստեղ նորից* խոչընդոտ է առաջանում նրա մտածողության ճանապարհին *(330)*

Գորկին չի ուզում սահել անհայտություն *(331)*

*Կան և տեղանունների, անձնանունների սխալներ, աշխատությունների վերնագրերի աղավաղումներ։ Հայերեն չթարգմանված ռուսերեն աղբյուրները գրքում հիշատակված են հայերեն, մինչդեռ օտար լեզուներից արված վկայակոչումների աղբյուրներն խրավացիորեն չեն թարգմանված։*

## ԻՄԱՍՏԱՅԻՆ ԱՂԱՎԱՂՈՒՄՆԵՐ

### Տպագրված է

...*Նորից պետք է* ճանապարհորդել գրքից գիրք... դեպի *շոտլանդական կոմունիստներից* մեկի տպավորությունը... *(23)*

*Պլեխանովի* մոտ... *մեծ* տաղանդի անհատապաշտություն է *(էջ 23)*

*Շոտլանդացիները շատ կամակոր ժողովուրդ են (23)*

*Ցայնբերգը այդ* զգացողությունը բնորոշել է որպես... զգացողություն *(37)*

Գրագող-*ցարին (149)*

*«Ենթագիտակցականի»* արձակումը, *ցույց արդիականության ամենադառն և մեզ* մարդկայնազրկող *աղետն է։ Այն հասցնում է նաև* ձևի *տրամաբանության* պատառոտված անկարգությանը *(195)*

հավակնությունների *տեսություն... (304)*

...*անպլացկարտ վագոնի վերին ուղեբեռային* մահճակին *քնելը (306)*

...*էսեռական գրքույկի համարակալված կտրոնը՝ ստորագրության համար նախատեսված բլանկով (307)*

Նվիրված *գիրք (309)*

«փառապանծ» փիլիսոփայություն *(309)*

...*բարձրագույն հոգևոր* հուսառության ունենում *(311)*

*Չի կարելի* հեղափոխության գնալ, *չտիրապետելով բարձրագույն ռեալականության (311)*

խլության պատճառով *(312)*

ամենաերկար ընթացող *գնացքը (312)*

«ինքնագործ» *աղոթքներ (312)*

հնազանդ աղջիկ *(312, 319)*

արնահեղ ործանք *(315)*

*Եվ ահա նա՝ թեև* հիվանդությունից կեղեքված *(315)*

...*մինչև որ* ժամանակը *որակ դառնա (319)*

առավել նվաստություն, *քան հպարտություն (321)*

*Չէ որ ավելի պարզ լինել չի կարող՝ անարխիզմը* շատ վատ հեղափոխական է *(330)*

*Նա ամբողջովին՝ ոտքից մինչև գլուխ* տեղավորվում է քննադատության և ժխտման մեջ *(331)*

*Մարքսի փիլիսոփայության էությունը «աշ*խարհը վերակառուցելու» *խնդիրն է (334)*

*Երկիրը տենդային պայքար է տանում ամբողջ աշխարհի բուրժուազիայի դեմ, որը կատաղաբար վրեժի է դիմում... (339)*

*«Գյուղական չքավորությունը»... (166, 167)*

### Ճիշտ կլիներ

*Նորից պետք է թերթել շատ գրքեր... անդրադառնալով շոտլանդական կոմունիստներից մեկի տպավորությանը*

...*ինդիվիդուալիզմ է*

...*համառ ժողովուրդ են*

*Ցայնբերգն այդ զգացմունքը բնորոշել է որպես ներքին ազատության հատուկ զգայում*

*գրքեր գողացած ցարին*

*«Ենթագիտակցականի» ձերբազերծումը, թերևս, արդիականության դառնագույն և մարդկայնությունից մեզ զրկող աղետն է։ Այն հանգեցնում է տրամաբանության ձևի կոտորակված կարգազրկման*

*Հավանականության տեսություն...*

...*անպլացկարտ վագոնի վերին՝ բեռնահարկում քնելը*

*գրանցման բլանկներ ունեցող էսեռական գրքույկի համարակալված թերթիկը*

*ձրի գիրք*

*«ուղղափառ» փիլիսոփայություն*

*հոգևոր գերագույն հարստության արտահայտություն*

*Չի կարելի հեղափոխություն կատարել առանց գերագույն ռեալության տիրապետման...*

*վատ լսողության պատճառով*

*ամենադանդաղընթաց գնացքը*

*«ինքնաստեղծ» աղոթքներ*

*միանձնուհի*

*արյունափսխում*

... *հիվանդությունից տանջահար*

... *քանակը որակ է դառնում*

*հպարտության որպիսի՜ նվաստացում*

*Չէ՛ որ ավելի քան պարզ է— անարխիզմը գերհեղափոխական է*

*այն ոտքից գլուխ քննադատություն է ու ժխտում...*

... *«աշխարհը վերափոխելու» խնդիրն է*

*Ամբողջ աշխարհի բուրժուազիայի դեմ մղվող կռվի տենդն է համակել երկրին, բուրժուազիա, որը վրեժ է լուծում կատաղորեն*

*«Գյուղական չքավորությանը»*

*Հարցնում ենք գրքի հրատարակիչներին՝ չէ՞ր կարելի արդյոք գործնական եզրակացություն անել, երբ հեղինակը շեշտել է, թե այս գիրքն իր «ամենադըժ*վարին ու ամենահրապուրիչ *ստեղծագործությունն է»։*

*Եզրափակելով մեր խոսքը՝ գտնում ենք, որ անհրաժեշտ է Մ. Շահինյանի այս սքանչելի երկը վերստին հրատարակել նոր թարգմանությամբ, չմոռանալով երեք բան— ո՛ւմ մասին է գրված, ո՛վ է գրել և ո՛վ է այն վերստեղծելու հայերեն։*

## Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ ԹՈՒԼԱՑՈՒՄԸ ԵՎ ԱՐԴԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

**Ա. Օ. ՋՈՒԲԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՓՈՒԼՈՒՄ միջազգային հարաբերություններին բնորոշ են արմատական փոփոխությունները։ Երկարատև առճակատումից ու «սառը պատերազմից» անցումը դեպի լարվածության թուլացում և համագործակցություն, որը տեղի ունեցավ 70-ական թվականների սկզբին, համընդհանուր խաղաղության ու միջազգային անվտանգության ապահովման համար Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների մղած հետևողական պայքարի արդյունքն էր։ ՍՄԿԿ XXV համագումարն ամփոփեց կուսակցության արտաքին քաղաքական գործունեության արդյունքները և ընդունեց հանուն խաղաղության և համագործակցության, հանուն ժողովուրդների ազատության և անկախության մղվող հետագա պայքարի ծրագիրը։ Համագումարի պատմական որոշումներից հետո անցած տարիները նշանավորվեցին սոցիալիստական արտաքին քաղաքականության նոր հաջողություններով։ Տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքն առավել տիրապետող է դառնում միջազգային հարաբերություններում։ Լայն չափեր է ընդունում սոցիալիստական և կապիտալիստական երկրների համագործակցությունը հատկապես եվրոպական մայրցամաքում՝ տնտեսության, գիտության ու տեխնիկայի բնագավառում։ Առևտրի ու տնտեսական կապերի ավանդական ձևերի հետ միասին վերջին ժամանակներս տարածվում են խոշոր մասշտաբի նախագծերը, կնքվում են տնտեսական լայն, տևական հեռանկար ունեցող համաձայնագրեր։*

*Քաղաքական բնագավառում ստեղծվել ու հաջողությամբ գործում է սոցիալիզմի և կապիտալիզմի երկրների ղեկավար գործիչների մշտական կոնսուլտացիաների մեխանիզմը, որը հնարավորություն է ընձեռում լուծելու ծագող պրոբլեմները և շարունակելու ընթանալ լարվածության թուլացման ուղիով։*

*Ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմանի համագործակցության լայն կոմպլեքս է ստեղծվել եվրոպական մայրցամաքում։ Անվտանգության և համագործակցության համաեվրոպական խորհրդակցության որոշումները զգալի չափով նպաստեցին մայրցամաքի միջազգային հարաբերությունների բարելավմանը։*

*Միջազգային հարաբերությունները վերջին ժամանակներս զարգանում են բարդ ու հակասական իրավիճակում։ Լարվածության թուլացման հակառակորդները խիստ ուժեղացրել են իրենց քայքայիչ գործողությունները։ Ռեակցիոն ուժերի և ամենից առաջ ՆԱՏՕ-ի ռազմական շրջանների ճնշման տակ ընդունվել են սպառազինությունների նոր ծրագրեր։ ԱՄՆ-ի ղեկավարները մշակում են ռազմաքաղաքական դաշինքների ամրապնդման ծրագրեր՝ օգտագործելով «սովետական սպառնալիքի» մասին առասպելներ և այլն։ Ժամանակակից միջազգային հարաբերությունների համար բնորոշ է նաև միջիմպերիալիստական հակասությունների շեշտակի խորացումը։ Ինտեգրացիոն պրոցեսներին զուգահեռ կապիտալիստական աշխարհում ակտիվորեն գործում են կենտրոնախույս ուժեր, միմյանց հակադրելով արևմտաեվրոպական տերությունների շահերը և սրելով վերջիններիս հարաբերությունները ԱՄՆ-ի հետ։*



*Միջազգային հարաբերություններում եղած հակասությունները, ռեալիստական շրջանների և ռեակցիոն ուժերի պայքարը կապիտալիստական աշխարհում դրսևորվում են նաև գաղափարախոսական ոլորտում։ Արևմուտքում լույս են տեսել ինչպես կոլեկտիվ, այնպես էլ անհատական մի շարք աշխատություններ, որոնցում ներկայիս և անցյալի միջազգային իրադարձությունները գնահատվում ու բացահայտվում են ռեալիզմի դիրքերից։ Առանձին աշխատություններում առաջադրվում են միջազգային հարաբերությունների հեռանկարային մոդելներ, իրադարձությունների ապագա զարգացման կանխագուշակումներ, մեծ ուշադրություն է նվիրվում լարվածության թուլացման պրոբլեմներին, Արևելքի և Արևմուտքի հարաբերությունների բարելավման հեռանկարներին։ Մեծ քանակությամբ մասնագիտական գրականություն է նվիրվում խաղաղ գոյակցության սկզբունքների վերլուծությանը, ըստ որում շատ աշխատություններ ընդունում են այդ սկզբունքի կարևորությունն ու օգտակարությունը ժամանակակից միջազգային հարաբերությունների զարգացման համար։ Սակայն նման հրապարակումներն այսօր տիպական չեն արդի բուրժուական պատմամիջազգայնագիտական գրականությանը։ Ռեակցիոն շրջանները վերջին ժամանակներս գաղափարախոսական լայն հարձակում են ծավալել սոցիալիզմի երկրների դեմ։*

*Եթե խոսելու լինենք միջազգային հարաբերությունների և ՍՍՀՄ արտաքին քաղաքականության հարցերի առնչությամբ Արևմուտքի գաղափարախոսների գործունեության մի քանի ընդհանուր կողմերի մասին, ապա կարելի է նշել հետևյալը։*

*Նախ, Արևմուտքում շարունակում են հրատարակել մեծ թվով աշխատություններ, որոնցում խեղաթյուրված են մեկնաբանում Սովետական Միության արտաքին քաղաքականության ողջ պատմությունը և միջազգային հարաբերության զարգացումը, ծամծմում են դեռևս «սառը պատերազմի» ժամանակներում ծնված այնպիսի հին տեսություններ ու կոնցեպցիաներ, ինչպիսիք են, օրինակ, սովետական արտաքին քաղաքականության «ագրեսիվ» և «էքսպանսիոնիստական» բնույթի վերաբերյալ առասպելը, խաղաղ գոյակցության քաղաքականության և համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման անհամատեղելիությունը և այլն։*

*Երկրորդ, վերջին տարիներին ակնհայտորեն ուժեղացել են հարձակումները Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների դեմ այնպիսի «նոր» հարցերի առնչությամբ, ինչպիսիք են «խաղաղ գոյակցությունն ու մարդու իրավունքները», «արտաքին քաղաքականությունն ու հումանիզմի պրոբլեմները» և այլն։ Օգտագործելով այդ պրոբլեմների շուրջ տեղի ունեցող դիվանագիտական վիճաբանությունները, բուրժուական միազգայնագետները ստեղծում են ստվարածավալ աշխատություններ, որոնցում, նենգափոխելով մարդու իրավունքների պրոբլեմները, փորձում են տեսական հիմք ստեղծել լարվածության թուլացման հակառակորդների և այն գաղափարախոսների փաստարկների համար, ովքեր կցանկանային դրանից միակողմանի օգուտներ ու առավելություններ կորզել ի վնաս սոցիալիզմի երկրների։*

*Երրորդ, օգտագործում են գաղափարախոսական պայքարի ամենաբազմազան ձևերն ու մեթոդները, մասնավորապես՝ միջազգային հարաբերությունների պրոբլեմների բնագավառում, դրանք հարմարեցնելով համաշխարհային զարգացման արդի փուլի առանձնահատկություններին։ Ճակատային հարձակումները սոցիալիզմի, նրա ներքին և արտաքին քաղաքականության վրա հաճախ փոխարինվում են շրջանցիկ մանևրներով, այնպիսի տեսությունների ստեղծմամբ, որոնցում պատմական ճշմարտության խեղաթյուրումը, իրադարձությունների կամայական մեկնաբանումը զուգակցվում են մի շարք հարկադրական խոստովանությունների, խաղաղության, անվտանգության և համագործակցության ամրապնդման կարևորության վերաբերյալ դրական կարծիքների հետ։ Արևմտյան ինտեգրացիայի, այդ թվում քաղաքական և ռազմական ինտ-*

գավառներում, նախկին կոնցեպցիաներն ուղեկցվում են լարվածության թուլացման անհրաժեշտության, Արևելքի և Արևմուտքի միջև համագործակցությունը զարգացնելու օգտակարության մասին խոսակցություններով։ Նման կոմբինացիաներն ազդում են նաև բուն տեսությունների և կոնցեպցիաների բովանդակության վրա, որոնք հաճախ դառնում են էկլեկտիկ, ուղեկցվելով զանազան վերապահումներով ու կոմպրոմիսներով։ Մատերիալիզմի տարրերի օգտագործումը, մի ամբողջ շարք մարքսիստական դրույթների ընդունումը շատ դեպքերում ծառայում են ոչ թե նախկին տեսություններն ու կոնցեպցիաներն արմատապես կերպարանափոխելուն, դրանցից հրաժարվելուն, այլ միայն դրանց ավելի մեծ համոզկերություն հաղորդելու և արդեն մոմենտի խնդիրներին ու առանձնահատկություններին համապատասխանեցնելու նպատակներին։

Չորրորդ, միջազգային իրադրության տեղաշարժերն արտացոլող գաղափարախոսական ոլորտի փոփոխությունները մեծացրել են կապիտալիզմի գաղափարախոսների նոր տեսությունների խայտաբղետությունն ու բարդությունը։ Բուրժուական մասնագետների աշխատություններում այժմ այնքան էլ հաճախ չեն հանդիպում միանշանակ և ուղղագիծ սխեմաներ ու լուծումներ. ծայրահեղ «ձախ» և բացահայտ ռեակցիոն տեսություններին զուգահեռ լայնորեն տարածվում են զանազան տարրեր ու սխեմաներ միակցող միջանկյալ կոնցեպցիաները։ Բացահայտ հակակոմունիստական տեսությունները զուգակցվում են ավելի ճկուն ուղղության փորձերի հետ, որոնք զարգացնում և պրոպագանդում են նոր գաղափարներ ու կոնցեպցիաներ, ինչպես նաև հին տեսությունները ժամանակակից «փաթեթավորմամբ», որը համապատասխանում է միջազգային հարաբերությունների արդի փուլի խնդիրներին ու պահանջներին։

Այժմ գաղափարախոսական սուր պայքարի առարկա դարձած պրոբլեմներից կարևորը ՍՍՀՄ արտաքին քաղաքականության և նորագույն շրջանի միջազգային հարաբերությունների, այսինքն՝ 1917—1918 թվականներից մինչև մեր օրերն ընկած ժամանակաշրջանի պատմությունն է։

Պրոբլեմների առաջին մեծ խումբը կապված է սովետական արտաքին քաղաքականության, սովետական դիվանագիտության լենինյան փուլի ձևավորման պատմության հետ։ Զանդրադառնալով այդ ժամանակաշրջանի արտաքին քաղաքական պատմության բազմաթիվ կոնկրետ պրոբլեմներին, մատնանշենք միայն այնպիսիք, որոնք վերաբերում են ընդհանուր ուղղություններին և կապված են արտաքին քաղաքականության ու միջազգային հարաբերությունների պատմության տեսական հարցերի գնահատման հետ։ Դրանց վերաբերյալ կապիտալիստական աշխարհում հրատարակված գրքերի քանակն իրոք հսկայական է։ Ներկայումս հայտնի բուրժուական «սովետագետների» նշանակալի մասը հռչակվել է՝ անդրադառնալով սովետական երկրի հետհոկտեմբերյան առաջին տարիների արտաքին քաղաքականության պատմությանը։

Այդ աշխատությունների զգալի մասի հիմնական նպատակն է միջազգային զարգացման ընդհանուր ընթացքի վրա սոցիալիզմի արտաքին քաղաքականության ազդեցությունը թուլացնելը, սովետական երկրի այն ժամանակվա արտաքին քաղաքական գործունեությունը տեսական-միջազգային ոլորտից դուրս բերելը, այն կամ կոնյունկտուրային, կամ տակտիկական տարրերով սահմանափակելը, կամ միայն համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման հետ կապելը։

Սովետական երկրի և կապիտալիստական աշխարհի հարաբերությունների հետ կապված միջազգային քաղաքական պրոբլեմների ողջ կոմպլեքսը բուրժուական շատ աշխատություններում հայտարարվում է որպես մարքսիզմ-լենինիզմին հակասող ու բնականոն իրավիճակ։ Տարբեր որոշակիությամբ այդ ոգով է գրում ԱՄՆ-ի, Անգլիայի, ԳՖՀ-ի և այլ երկրների միջազգայնագետ պատմաբանների մեծ մասը։ Ամերիկացի պրոֆեսոր Վ. Կուլսկին ուղղակի գրում է, որ խաղաղ գոյակցության սկզբունքը հատուկ չէ մարքսիզմ-լենինիզմին։

Սովետական արտաքին քաղաքականության և միջազգային հարաբերու-



թյունների պրոբլեմների վերաբերյալ բազմաթիվ աշխատությունների հեղինակ Ջորջ Քենանը ժամանակին գրել է, որ «սովետական հանրապետությունը մտադրություն չուներ իր հարաբերությունները կարգավորելու մյուս երկրների հետ»։

Այդ համապարփակ գաղափարի վրա խարսխվել և այժմ էլ խարսխվում են սովետական քաղաքականության ագրեսիվության, էքսպանսիոնիզմի մասին տեսություններ, քաղաքականություն, որին Արևմուտքը իբր պետք է հակակշիռ հանուն իր անվտանգության։

Իհարկե, մեր ժամանակի բուրժուական պատմական միջազգայնագետները չեն կարող անտեսել այն բազմաթիվ փաստերը, որ սովետական երկիրը և՛ 20-ական, և՛ 30-ական թվականներին իրականացրել է բազմաթիվ միջոցառումներ՝ ուղղված քաղաքական ու տնտեսական ոլորտում կապիտալիստական երկրների հետ հարաբերությունները կարգավորելուն, խաղաղությունը, միջազգային անվտանգությունն ու զինաթափումն ապահովելուն։ Արևմուտքում հրատարակվող զանազան աշխատություններում այսօր կարելի է հանդիպել նման առատ փաստերի։ Բայց հետաքրքրական բան է կատարվում. բազմաթիվ այդպիսի օրինակներն ու փաստերը, Վ. Ի. Լենինի, Գ. Վ. Չիչերինի և սովետական մյուս դիվանագետների գործունեության վերաբերյալ պատմությունները չեն ուղեկցվում բուրժուական «սովետագիտության» տեսական դրույթների վերանայմամբ։ Արևմտյան գաղափարախոսների համար դրանք լավագույն դեպքում «հաստատումն» են այն գաղափարների, ըստ որոնց, իբր թե սովետական կառավարությունը հեռացել է մարքս-լենինյան տեսության հիմունքներից բխող նախասկզբնական նպատակներից, թե Արևմուտքի հետ հարաբերությունների կարգավորման ջանքերը հարկադրական բնույթի են, իսկ սովետական քաղաքականությունը՝ զուտ տակտիկական, կոնյունկտուրային է։ Փոքր ինչ այլ է մոտեցումը վերջին ժամանակների սովետական քաղաքականության գնահատմանը, բայց ՍՍՀՄ-ի 20-ական և 30-ական թվականների արտաքին քաղաքականության նկատմամբ մինչև այժմ անփոփոխ է մնում խաղաղ գոյակցության սովետական քաղաքականության մեջ երկարաժամկետ ու անկեղծ օբյեկտիվ հիմքը ժխտող բուրժուական պատմագրության ընդհանուր մոտեցումը։

Բուրժուական մասնագետների բոլոր այդ տեսական ըմբռնումները հետապնդում են առնվազն երկու նպատակ. նախ՝ խզել սովետական արտաքին քաղաքականության հաջորդականությունը, այն զրկել սկզբունքային օբյեկտիվ ու մշտական հիմքից և, երկրորդ, ստեղծել տպավորություն, թե սովետական երկրի խաղաղության կոչերը ժամանակավոր են, դրանով իսկ անվստահություն սերմանել սովետական արտաքին քաղաքականության, դրա նպատակների, խնդիրների ու կոնկրետ քայլերի հանդեպ։

Վերջին տարիներս առավելապես մեծանում է բուրժուական պատմաբանների հետաքրքրությունը նախապատերազմյան ժամանակաշրջանի միջազգային հարաբերությունների նկատմամբ։

Բուրժուական գաղափարախոսների տեսադաշտում գտնվող հարցերից հարկ է նշել ամենից առաջ «սառը պատերազմի» առաջացման հարցը։ «Սառը պատերազմի» պատմության մասին Արևմուտքում գրվել են հարյուրավոր՝ բացահայտ հետադիմականից մինչև ավելի չափավոր և նույնիսկ ռեալիստական գրքեր։ Դեռևս 50—60 թվականներին գրված այդ աշխատություններում երևան է եկել երկու հիմնական միտում։ Հիմնականում ամերիկացիներից բաղկացած պատմաբանների մի խումբ որոշակի ավանդույթ է ստեղծել «սառը պատերազմի» պատմության լուսաբանման գործում։ Թերևս, իբրև ելակետ են ծառայել այն գրքերն ու հոդվածները, որոնցում հիմնավորվում էր այսպես կոչված «կոմունիզմը զսպելու» քաղաքականությունը։ Ասպատուրյանը, Բեյլին, Ստրաուս-Հյուպեն, Կրեյգը, Չեմբեռլենը ամեն կերպ պրոպագանդում էին կոմունիզմի «ագրեսիվության» մասին, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Սովետական Միության կողմից ԱՄՆ-ին և ամբողջ «ազատ աշխարհին» սպառնացող վտանգի, Արևմուտքի երկրների նկատմամբ սովետական պետության անփոփոխ թշնամական քաղաքականության մասին թեզիսը։ Բոլոր այդ

հեղինակների հիմնական գաղափարն այն էր, որ Սովետական Միությունն է կրում «սառը պատերազմի» առաջացման և սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա սրման ողջ պատասխանատվությունը։

Ամերիկյան պատմագրության այդ միտումը մինչ օրս էլ շարունակվում է ԱՄՆ-ի պատմաբանների շատ աշխատություններում։ Որպես օրինակ նշենք Ա. Ուլամի գիրքը, որտեղ կրկին արծարծվում է այն գաղափարը, թե Սովետական Միության ագրեսիվությունը, որն իբր բնորոշ էր երկրորդ համաշխարհային պատերազմին հաջորդած ժամանակաշրջանին, հատուկ է եղել սովետական քաղաքականությանը Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ընկած ողջ ժամանակաշրջանում։

Այդ հարցերը հանգամանորեն լուսաբանում են նաև Արևմուտքի ժամանակակից շատ տեսաբաններ։ Ընդ որում, արևմտյան գաղափարախոսներն ունեն զանազան տեսակետներ։ Այս իմաստով առանձնապես ուշագրավ է ամերիկացի հայտնի միջազգայնագետ ու հասարակական գործիչ, անցյալում «սառը պատերազմի» պաշտպաններից մեկի՝ Ջ. Քենանի գիրքը։

Իր հոդվածներից մեկում Ջ. Քենանը գրում է, որ վերջին 25 տարվա ամերիկյան քաղաքականության ողջ իմաստը եղել է երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով գոյացած քաղաքական վակուումը լրացնելու, ինչպես նաև մասսայական ոչնչացման զենքի պրոբլեմը։ Եվ այնուհետև հեղինակը կոնկրետացնում է այդ նպատակներից յուրաքանչյուրը։ Հետաքրքրական է, որ Քենանը՝ «զսպելու» տխրահռչակ դոկտրինայի հեղինակներից մեկը, չի հիշատակում «կոմունիստական սպառնալիքի» մասին։ Նա հայտարարում է, որ ամբողջ աշխարհին գերիշխելու ԱՄՆ-ի փորձը անհաջողության մատնվեց և որ հարկավոր է մշակել նոր չափանիշներ։

Քենանը գրում է ՆԱՏՕ-ի անկատարության, ամբողջ իրավիճակը և «25 տարվա մեր քաղաքականության» արդյունքները քննադատաբար ուսումնասիրելու անհրաժեշտության մասին։ Խոսելով 25 տարվա ամբողջ ամերիկյան քաղաքականության արդյունքների մասին, հեղինակը գրում է, որ «դեռևս խուճապելու ժամանակը չէ, բայց արդեն բարեհոգության համար ևս հիմքեր չկան»։ Ջ. Քենանի հոդվածը ցույց է տալիս, որ ամերիկացի մի շարք առաջատար մասնագետներ զբաղված են ԱՄՆ-ի հետպատերազմյան քաղաքականության պատմությունը քննադատաբար վերանայելով, անցած տարիների զարգացման փորձից դասեր քաղելով։ Սակայն ամերիկացի միջազգայնագետների մեծ մասը շարունակում է ծամծմել ամերիկյան «սովետագիտության» հին դոգմաները։

Վերջին տարիներին ստեղծվել է պրոբլեմների մի նոր մեծ կոմպլեքս, որոնք կարելի է բնորոշել որպես «լարվածության թուլացում և գաղափարախոսական պայքար»։ Այստեղ բախվում և միահյուսվում են ամենաբազմապիսի միտումներ ու գործոններ, ըստ էության ընդգրկելով հասարակական կյանքի բոլոր ոլորտները։ Վերցնենք, օրինակ, խաղաղ գոյակցության սկզբունքի ժամանակակից ըմբռնման ու մեկնաբանման շուրջ ծավալված պայքարի հարցը։ Նախ, հարկ է պարզել խաղաղ գոյակցության, լարվածության թուլացման քաղաքականության հարաբերակցությունը երկու հասարակական-քաղաքական սիստեմների շարունակվող գաղափարական առճակատման, համաշխարհային ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի գաղափարների հակամարտության պայմաններում. երկրորդ, խաղաղ գոյակցության բուն քաղաքականության, դրա բովանդակության, ձևերի ու մեթոդների շուրջ մղվող գաղափարական պայքարը։

Բուրժուական որոշ գաղափարախոսներ փորձում են խաղաղ գոյակցությունը փոխադրել գաղափարախոսության բնագավառ, պնդելով, որ լարվածության թուլացումը պետք է ուղեկցվի երկու սիստեմների գաղափարական հակամարտության թուլացմամբ, պետք է ենթադրի գաղափարախոսական հանդուրժողականություն։ Արևմտագերմանացի պատմաբան, իր հակակոմունիստական հայացքներով հայտնի Կլաուս Մեներտը գրել է, որ «իսկական խաղաղ գոյակցությունը պետք է ենթադրի գաղափարական հանդուրժողականու-



թյուն», ՍՍՀՄ-ի հրաժարումը հեղափոխական և ազգային-ազատագրական շարժումները պաշտպանելուց։

Բայց, Սովետական Միությունից և սոցիալիզմի մյուս երկրներից պահանջելով թուլացնել գաղափարախոսական պայքարը, հրաժարվել կապիտալիզմի քննադատությունից, իրենք՝ բուրժուական գաղափարախոսները, ուժեղացնում են հարձակումները ՍՍՀՄ-ի, մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման տեսության ու պրակտիկայի վրա։ Այսպիսով, նրանք փորձում են լարվածության թուլացումն օգտագործել բուրժուական հայացքների պրոպագանդման, կապիտալիզմի ջատագովության համար։ Միաժամանակ արևմտյան պրոպագանդիստները ուժեղացրել են իրենց հարձակումները սոցիալիզմի երկրների վրա, պահանջելով այդ երկրների քաղաքականության «լիբերացում», որոնելով զանազան «պրոբլեմներ»։ Այդ ամենի նպատակն է թուլացնել սոցիալիստական համագործակցության միասնությունը, մարքսիզմ-լենինիզմի վրա խարսխված նրա համախմբվածությունը։

Հարցերի երկրորդ մեծ խումբը կապված է խաղաղ գոյակցության քաղաքականության, դրա բովանդակության ու ձևերի անմիջական մեկնաբանման հետ։

1973—1978 թթ. ընթացքում ամերիկյան “Foreign Affairs" հանդեսը զետեղել էր հոդվածաշար՝ նվիրված «խաղաղ գոյակցության արևմտյան փիլիսոփայությունը» հարցին, որտեղ քննարկվում են միջազգային հարաբերությունների զարգացման պատմական տարբեր ժամանակաշրջանները և հետևություն արվում, որ այժմ արևմտյան աշխարհը պետք է մշակի խաղաղ գոյակցության իր «փիլիսոփայությունը»։

Սակայն, ընդունելով հանդերձ խաղաղ գոյակցության քաղաքականության նշանակությունը, Արևմուտքի շատ գաղափարախոսներ միաժամանակ փորձում են կապիտալիստական աշխարհի գաղափարախոսական, դասակարգային նպատակներին ու խնդիրներին համեմատ ամեն կերպ ձևափոխել խաղաղ գոյակցության սովետական կոնցեպցիան, արմատավորել այդ քաղաքականության բովանդակության ու սահմանների իրենց ըմբռնումը։ Որոշ աշխատություններ պարունակում են խոստովանություններ խաղաղ գոյակցության՝ որպես Արևելքի և Արևմուտքի միջև փոխհարաբերությունների ձևի, կարևորության ու օգտակարության։ «Ոչ մի պատճառ չկա,— գրում է, օրինակ, Քենանը,— որպեսզի երկու մեծ տերությունները (նկատի ունի ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը։ — Ա. Զ.) չկարողանան գոյակցել առանց զինված կոնֆլիկտների»։

Համանման խոստովանություններ կան նաև Մ. Շուլմանի վերջին աշխատություններում։ Շուլմանը ավելի հեռուն է գնում միայն բացասական գործոնների («զսպում» կամ «հակակոմունիզմ») վրա հենվող ամերիկյան նախկին կոնցեպցիաների սխալականությունն ընդունելով։ Այժմ, նշում է նա, հարկավոր է ավելի հստակորեն վերաբերվել ԱՄՆ-ի և Սովետական Միության հարաբերություններին։ «Մենք չպետք է փորձենք Սովետական Միությունը վերադարձնել կապիտալիզմին. սոցիալական սիստեմների տարբերությունը,— նկատում է Շուլմանը,— չպետք է կոնֆլիկտի աղբյուր լինի, և համենայն դեպս երկու հասարակությունները առաջիկա տասնամյակներին կարող են ընթանալ իրենց ուղիով։ Մեր խնդիրն է Սովետական Միությունն ընդգրկել միջազգային կոնստրուկտիվ սիստեմի մեջ, որտեղ որևէ երկրի գերիշխանության համար տեղ չի լինի։ Մեր մրցակցությունը շարունակվելու է։ Բայց որպեսզի այդ մրցակցությունը դարձնենք պակաս վտանգավոր խաղաղության գործի համար և պակաս մթագնված թշնամությամբ, հարկավոր է ընդունել խաղի ինչ-որ ընդհանուր կանոններ»։

Լարվածության թուլացման հարցերի շուրջ արևմտագերմանական „Die Zeit" թերթի և մի շարք այլ օրգանների էջերում կազմակերպված դիսկուսիայի ընթացքում նույնպես արվեցին մի շարք դատողություններ, որոնք ցույց են տալիս, թե ժամանակակից պայմաններում Արևմուտքի շատ գաղափարախոսներ չեն կարող չընդունել խաղաղ գոյակցության քաղաքականության, լարվածության թուլացման պրոցեսի նշանակությունը։

Փարիզում հրատարակված Խաղաղ գոյակցություն գրքի հեղինակներ Ֆի-

լիպ Բրետոնը և Ժան-Պիեր Շոդեն, վերլուծելով խաղաղ գոյակցության քաղաքականության խնդիրները, նկատում են. «Թեր և դեմ կողմերի համեմատությունը տեղիք է տալիս մտածելու, որ խաղաղ գոյակցությունը բացասական բնույթ չունի, քանզի որպես երկու գերտերությունների փոխհարաբերությունների սկզբունք, այն անկասկած հնարավորություն ընձեռեց խուսափելու իսկական պատերազմից՝ պատերազմող կողմերի և մնացյալ աշխարհի համար չափազանց ակնհայտ հետևանքներով»։ Ընդունելով հանդերձ խաղաղ գոյակցության ռեալությունն ու օգտակարությունը, բուրժուական շատ տեսաբաններ փորձում են ամեն կերպ նեղացնել խաղաղ գոյակցության շրջանակները, ապացուցել քաղաքականության, էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում սոցիալիզմի և կապիտալիզմի երկրների լայն ու բազմապլանային համագործակցության անհնարինությունը։ Այստեղից և ծնունդ է առնում սոցիալիզմի երկրների հետ կապիտալիստական պետությունների կոնտակտների սահմանափակության վերաբերյալ թեզիսը։ Բուրժուական տեսաբանների մի շարք աշխատություններում փորձ է արվում խաղաղ գոյակցությունը դիտել սոցիալական և դասակարգային զարգացման պրոցեսներից դուրս։ Պնդում են, թե խաղաղ գոյակցությունը ուժերի ավանդական հավասարակշռությունն է միայն։

Բուրժուական գաղափարախոսները փորձում են նաև խաղաղ գոյակցության քաղաքականությունն օգտագործել սոցիալիստական երկրների ներքին գործերին իրենց միջամտությունը տեսականորեն հիմնավորելու համար։ Այդ հարցը լայնորեն քննարկվում է ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում և Արևմուտքի այլ երկրներում հրատարակված բազմաթիվ գրքերում ու հոդվածներում։ Ինչպես հայտնի է, 40—60-ական թվականներին ստեղծվել էին բազմաթիվ տեսություններ, որոնց նպատակն էր «խանգարել աշխարհը կոմունիստացնելու Սովետական Միության փորձին»։ Միաժամանակ ծնունդ առավ սոցիալիզմի երկրների վրա մշտական ճնշում գործադրելու կոնցեպցիան, որի նպատակն էր փոփոխել դրանց ներքին կարգը, թուլացնել միասնությունը։ «Ուժի դիրքից» քաղաքականության օգնությամբ այդ նպատակներին չհասնելով, բուրժուական տեսաբանները 60-ական թվականների կեսերին ձևակերպեցին այսպես կոչված «կամուրջներ գցելու քաղաքականությունը», որի նպատակն էր՝ երկու սիստեմների առճակատման պայմաններում հասնել սոցիալիզմի «ներքին էվոլյուցիայի»։ Այդ տեսության գաղափարախոսներից մեկը՝ Բժեզինսկին, 1965 թվականին այդ խնդիրը շարադրում էր հետևյալ կերպ. «Արևմուտքը հասկանում է, որ իրեն չի հաջողվի ուղղակի քաղաքական ակցիայի միջոցով ոչնչացնել Արևելյան Եվրոպայի քաղաքական ռեժիմները, կազմալուծել կոմունիստական պետությունների գոյություն ունեցող սոցիալ-քաղաքական կազմակերպությունը»։ Եվ քանի որ դա այդպես է, պնդում էր Բժեզինսկին, «ապա հարկավոր է շեշտը դնել այդ պետությունների ներսում և ամբողջ բլոկի ներսում էվոլյուցիոն փոփոխությունների պաշտպանության վրա»։ Եվ հեղինակը կոչ էր անում ուժեղացնել այլ՝ կոմունիստական գաղափարախոսությունից տարբեր, կոնցեպցիաների ներթափանցումը սոցիալիզմի երկրները։

Ձախողվեց «կամուրջներ գցելու» քաղաքականությունը։ Աշխարհում շրջադարձ կատարվեց առճակատումից դեպի համագործակցություն, ընդ որում, ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս երկրների գործարար շրջանների շատ խոշոր ներկայացուցիչներ տնտեսական և առևտրական լայն կապեր են հաստատում Սովետական Միության հետ, ընդունելով հավասարության ու ներքին գործերին չմիջամտելու սկզբունքները։ Այս պայմաններում ևս Բժեզինսկին փորձում է իր նախկին տեսությունները հարմարեցնել պատմական նոր իրադրությանը։ «Արևելքի և Արևմուտքի լայն խաղաղասիրական պարտավորությունները,— գրում է նա,— որոնք թեև զուտ տնտեսական ասպեկտների շրջանակներում են, պետք է գրեթե աննկատելիորեն կտորներ պոկոտեն կոմունիստական դոկտրինայի շենքից, դրանով իսկ ուժեղացնելով կոմպրոմիսը Արևելքի և Արևմուտքի միջև»։ Այսպիսով, Բժեզինսկու մտահղացմամբ, լարվածության թուլացումը պետք է օգտագործվի այն խնդիրների լուծման համար, որ նա առաջադրում էր «կամուրջներ գցելու» քաղաքականությունը ձևակերպելիս։



ԱՄՆ-ում լսելի են նաև հասարակայնության կողմից «ՍՍՀՄ-ի վրա մասնավոր և խմբային ճնշում գործադրելու» կոչերը, դրանցում տեսնելով նոր միջոց՝ փոփոխությունների հասնելու սովետական երկրի քաղաքականության մեջ։ Ինչպես երևում է, արևմտյան որոշ գաղափարախոսներ փորձում են արմատավորել խաղաղ գոյակցության տեսության ու պրակտիկայի այնպիսի ըմբռնում, որը հնարավորություն ընձեռեր միջամտելու սովետական երկրի ներքին գործերին կամ հասնելու այն բանին, որ սոցիալիզմի երկրները ետ կանգնեն հեղափոխական շարժումները պաշտպանելուց և դադարեցնեն գաղափարախոսական պայքարը։ Խոսքը վերաբերում է խաղաղ գոյակցության քաղաքականության սահմաններն առձգելու փորձերին, դրանցում ներառելով նաև գաղափարախոսության բնագավառը։

Բուրժուական գաղափարախոսներից բացի, խաղաղության և լարվածության թուլացման գաղափարների ու քաղաքականության դեմ մղվող պայքարում ակտիվորեն ընդգրկվել են նաև մաոյական ղեկավարները։ ՉԺՀ-ում վերջերս հրատարակված բազմաթիվ աշխատություններում, լրագրերում ու հանդեսներում, մաոիզմի տեսաբանները փորձում են պրոպագանդել ու տարածել լարվածության թուլացման և խաղաղ գոյակցության իրենց ըմբռնումը, դրանք մեկնաբանելով հակասովետական, հակասոցիալիստական դիրքերից, հանդես գալով խաղաղության և զինաթափման ապահովմանը նպատակամղված բոլոր միջոցառումների դեմ։

Արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքների վերլուծությունը, սոցիալիստական համագործակցության երկրների և կապիտալիստական պետությունների փոխհարաբերությունների ողջ փորձը վկայում են, որ խաղաղ գոյակցությունը կապված է միջպետական հարաբերությունների հետ և չի տարածվում գաղափարախոսական ոլորտի վրա, այն պայքարի վրա, որ աշխարհում մղվում է մարքսիզմ-լենինիզմի և բուրժուական գաղափարախոսության միջև։

Այս տարվա հունիսին Վիեննայում ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերի հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ Լ. Ի. Բրեժնևի հանդիպման արդյունքների մասին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն իրենց գնահատականում շեշտեցին, որ Սովետական Միությունն իր պարտքն է համարում այսուհետ ևս հետևողական և հաստատակամ պայքար մղել սպառազինությունների մրցավազքի դեմ, սպառազինությունների նոր տեսակների արտադրության կրճատման ու դադարեցման, միջազգային լարվածության հետագա թուլացման, ամբողջ աշխարհի կայուն խաղաղության համար։

Գաղափարախոսական սուր պայքարի իրադրության մեջ սոցիալիզմի երկրները մարքսիզմ-լենինիզմի դիրքերից համոզիչ կերպով մերկացնում են միջազգային հարաբերությունների բուրժուական և մաոյական տեսությունները, շարունակում պայքարը հանուն խաղաղության, զինաթափման և միջազգային անվտանգության։

---

## Երիտասարդ գիտաշխատողի ամբիոն

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԻՄԱՍՏԱՍԵՐԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՇՈՒՐՋ

(ՄԱՀՎԱՆ 850-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Կ. Ա. ՄԻՐՈՒՄՅԱՆ

**ՀՈՎՀԱՆՆԵՍ ԻՄԱՍՏԱՍԵՐԸ** (XI դ. կեսեր—1129) միջնադարյան հայ տեսական մտքի ականավոր ներկայացուցիչներից է։ Նա իր խոսքն է ասել տիեզերաբանության, տոմարագիտության, մաթեմատիկայի, կենսաբանության, փիլիսոփայության, գեղագիտության, հռետորական արվեստի և այլ բնագավառներում։

Հովհաննես Իմաստասերը երկար տարիներ ղեկավարել է Անիի և Հաղպատի բարձրագույն դպրոցները, որոնք ժամանակի հայ մշակույթի խոշորագույն կենտրոններն էին։ Իր գիտամանկավարժական գործունեությամբ նա մի նոր աստիճանի բարձրացրեց դասավանդումը, իր տաղանդով և կազմակերպչական մեծ ունակություններով նպաստեց այդ դպրոցների բուռն վերելքին, նրանց վերածնմանն ու փառքին։

Մատերիալիստական դրույթների և գաղափարների «ռացիոնալ հատիկները» ցրված են նրա բնագիտական ու փիլիսոփայական, ինչպես նաև այլ բնույթի գրեթե բոլոր հայտնի աշխատություններում։ Չնայած Հովհաննեսը չի թողել ծավալուն փիլիսոփայական երկեր, նրա գրավոր ժառանգությունն ամբողջությամբ կրում է փիլիսոփայական մտածողության և վերլուծության կնիքը։

Իմաստասերի ուսմունքի մատերիալիստական ուղղվածությունն առավել որոշակի արտահայտվում է բնափիլիսոփայության, էսթետիկայի և իմացաբանության մեջ։ Իմացաբանական հարցերը կարևոր տեղ են գրավում հեղինակի տեսական հայացքների սիստեմում և ներկա հոդվածի ուսումնասիրության առարկան են։

Փիլիսոփայության հիմնական հարցը, որը փիլիսոփաներին հնուց ի վեր բաժանել է երկու խոշոր մարտնչող ուղղությունների՝ մատերիալիստական և իդեալիստական, Իմաստասերը լուծում է իր ժամանակի ոգով՝ իդեալիստական ելակետով։ Սակայն տրամաբանական և իմացաբանական հարցերը վերլուծելիս նա հաճախ դուրս է գալիս իր դարաշրջանի ուղղափառ գաղափարախոսության և դիրքորոշման շրջանակներից ու դրանց տալիս է ժամանակի գիտական բացատրություն։

**ՇՐՋԱՊԱՏՈՂ ԿՈՆԿՐԵՏ-ԶԳԱՅԱԿԱՆ** աշխարհը հասանելի է մարդկային իմացությանը։ Քանզի, ըստ Իմաստասերի, «տեսանելի աշխարհ, այս է և մտաւոր իմանալին» և գիտելիքների ձեռք բերումը «անհնարին և անկարելի» բան չէ։

Օբյեկտիվ աշխարհի ճանաչողությունը չիմացությունից դեպի իմացություն, թերի իմացությունից դեպի առավել լրիվ և հավաստի իմացություն ձգվող երկարատև ուղընթաց է։ Այս պրոցեսն անմիջականորեն կապվում է գիտության զարգացման հետ, որը դիտվում է որպես շրջապատող բնության մասին մարդկային գիտելիքների խորացում և, միաժամանակ, իբրև սխալ պատկերացումների ուղղում ու հաղթահարում։ Հենց գիտության շնորհիվ է տեղի ունենում նյութական իրերի



ճանաչողությունը։ Այսպես. «...Որպէս արուեստ բժշկութեան ոչ ի սկզբանցն ճշդիւ ամենայն գիտացեալ եղև, այլ առ սակաւ սակաւ, նոյնպէս և շրջաբերութիւն արեգական և լուսնի առ սակաւ սակաւ գիտացեալ եղև»*։

Սա բացատրվում է նրանով, որ մարդկային մտածողությունը բացարձակ չէ, այն «անհաստատ է և տիրապէս ամենայն իրաց ոչ կարէ հասու լինել»։

Իմաստասերը գիտակցում է ճշմարտության հիմնման ողջ դժվարությունը, մի իմացություն, որը հաճախ դառնում է անհնարին։ Գիտելիքների հարաբերականության և իմացության տվյալ փուլում մարդու ճանաչողական ունակությունների սահմանափակության պատճառով է, որ միտքն ակամայից ընկնում է կասկածանքների մեջ։ Մտածողի մոտ կասկածը չի դառնում ունիվերսալ մեթոդաբանական սկզբունք։ Բայց միաժամանակ այն չի խաթարում նրա մոտ եղած հավատը մարդկային բանականության հզորության, աշխարհի ճանաչելիության հանդեպ, որը նկատելի է պյուռոնականների, միջնադարյան միստիկայի աջ թևի ներկայացուցիչների ուսմունքներում։ Կասկածելով, նա ձգտում է ճանաչել ճշմարտությունը, բացահայտել թե՛ առարկաների, թե՛ աստծո էությունը։

Ճանաչողության պրոցեսը, ըստ Իմաստասերի, անցնում է իմացության երկու՝ զգայական և բնական աստիճաններ։ Զգայությունը առաջին և անհրաժեշտ աստիճանն է, որը հետագայում ներառվում է իմացական ըստրուկտուրաների ավելի բարձր մակարդակների մեջ։

Զգայությունները նա իրավացիորեն դիտում է որպես արտաքին բնության մասին մարդու անմիջական ինֆորմացիայի ձևեր։ Հենց դրանց շնորհիվ է իմացության սուբյեկտը կապվում արտաքին աշխարհի հետ, «վտարելոց ընդ զգայարանս արտաքս»։ Զգայարաններն այն դարպասներն են, որոնց միջոցով նյութական աշխարհը ազդում է մարդու վրա՝ հարուցելով որոշակի զգայություններ և ստեղծելով զգայական պատկերացումներ։

Տեսողական և լսողական ընկալումների էությունը Իմաստասերը բացատրում է նյութական օբյեկտների ազդեցությամբ զգայարանների վրա և տեսողական նյարդի ու լսողության ջիղի գրգռումով։ Այսպես, «աչքն չկայ մինչև տեսանելիքս զնայ շարժեն որպէս ձայնն զականջն, այլ զհակառակն առնէ»։ Սարկավագը մի կողմից չի անջատում ընկալումը առարկայից, իսկ մյուս կողմից չի նույնացնում դրանք։ Լինելով արտաքին աշխարհի արտացոլում, զգայական տվյալները նույնական չեն նյութական մարմինների հետ։ Այս արտացոլումն արդեն ինքը՝ առարկան չէ, այսինքն՝ զերծ է նյութականությունից և իրենից ներկայացնում է իրի արտաքին, աննյութական տեսքը, պատճենը, «ձևը»։ «Մի թէ,— գրում է Իմաստասերը,— այս որ ի տեսանել եմք զաշխարհս կարծեօք իրք է, ոչ գիտես թէ այս այն որ ցոյց է և օրինակ»։

Նմանօրինակ անույթներ առաջ են քաշել միջնադարյան մատերիալիստական մտքի ականավոր ներկայացուցիչներ Ավերոեսը (1126—1198), Սիգեր Բրաբանտացին (XIII դ.), Կլարենբալդը (մահ. 1170 թվ. հետո)։ Բայց հայ մտածողը, ի տարբերություն Արիստոտելի և լատինական ավերոեսականների, տվյալ հարցը զննում է հիմնականում իմացաբանական մակարդակի վրա, չշոշափելով նրա գոյաբանական ասպեկտը։ Այս է պատճառը, որ Իմաստասերի մոտ ընդհանուր առմամբ ավելի ուժեղ է դրսևորվում մատերիալիստական միտումը։

Փիլիսոփան քննադատում է այն կեղծ գիտնականներին, որոնք, ընդունելով զգայական-պատկերային ընկալման ռեալ գոյությունը, այնուամենայնիվ կասկածում կամ ժխտում են զգայական «պատկերների», ինչպես նաև աննյութական հասկացությունների հավաստիությունը և պնդում, որ գիտելիքը կարող է պարունակվել միմիայն բառերի մեջ։ Վերջիններիս կարծիքով գիտելիքները ձեռք են բերվում ոչ թե զգայարանների և ինտելեկտի միջոցով, օբյեկտիվ իրերի արտացոլման հետևանքով, այլ բառերի։ «Քանզի,— գրում է նա,— ոմանք զանմարմին տեսակսն և զյարացոյցսն զգալեացս ի բաց բառնան, ասեն լոկ անուամբ միայն, ասի թէ տեսակ կայ ամենայն զգալեացս, բայց ճշմարտութեամբ ոչ է»։

Բառն ինքնին գիտելիք չի պարունակում, այլ միայն գիտելիքի արտահայտման և հաղորդման միջոց է, քանզի «զոր յղացեալ ունի ի ներս զբանն ի դուրս բերէ ընդ բերանն, և ի ձեռն բանին խոհականութիւնն ճանաչի»։ Այսինքն, Իմաստասերը տարբերում է բառը, որպես անվանում և հասկացությունները, որոնք արտահայտում են էությունը։

Սարկավագը գիտակցում է, որ զգայարանների միջոցով ձեռք բերված գիտելիքները միշտ չէ, որ ճիշտ են։ Զգայությունները կարող են նաև մոլորեցնել բանականությանը։ Դա տեղի է ունենում այն ժամանակ, երբ «մարմին բռնացեալ յաղթահարէ զգայութիւնս և զգայութիւնք ապստամբեալ հարստահարեն զմիտս և ախտք արտաքս ըստ սահմանն մոլեգնաբար ելանե-

*) *Հեղինակի վկայակոչած գիտական բոլոր աղբյուրներն ստուգված են։— Խմբ.։*

լով ի զգայութեանց անտի, բռնազբօսնեալք յանզգուշութենէ գերեն զբաւանդակ՝ անզգամութեան շահեալ»:

Հետևաբար, զգայական տվյալները ճշմարիտ չեն լինում միայն զգայարանների ոչ նորմալ գործունեության պարագայում: Այս դեպքում, հեղինակի պատկերավոր արտահայտությամբ «վատթարին զգայութիւնքն ի դառնալն առ միտքն իւր, ոչ է նայ մտացն որպէս օգնական, այլ իբրև ծառայ»: Իմաստասերը հերքում է ո՛չ միայն այն փիլիսոփաներին, որոնք անտեսում են զգայական «պատկերների» գոյությունը կամ դրանց արժանահավատությունը, այլև նրանց, ովքեր ժխտում են «զգայության տվյալների ճշմարտացիությունն» ընդհանրապես:

Զգայելու ունակությունը, ըստ Իմաստասերի, հատուկ է ողջ կենդանի բնությանը: Սակայն ոչ մի կենդանի էակ չունի իմացական ունակություն, քանզի վերջինս ենթադրում է ո՛չ միայն զգայական տվյալների, այլև բանական գործունեության առկայություն: Միմիայն զգայարանները, առանց բանականության միջամտության և աջակցության, չեն կարող դառնալ ճըշմարիտ գիտելիքների հիմք:

Չնայած այն բանին, որ Իմաստասերը ընդունում է զգայարանների առկայությունը և՛ կենդանիների, և՛ մարդու մոտ, այնուամենայնիվ, նա սահմանազատում է արտաքին օբյեկտների ազդեցության հետևանքով կենդանիների և մարդու ստացած զգայությունները: Նա կռահում է կենդանիների զգայարանների գործունեության զուտ ֆիզիոլոգիական ուղղվածությունը և մարդու զգայական ընկալումների իմացական բնույթը: Մարդու և կենդանիների զգայությունների գործողության էական տարբերությունը Իմաստասերը բացատրում է նրանով, որ մարդը որպես ճանաչող սուբյեկտ ո՛չ միայն գործում է ելնելով զգայական ընկալումներից, այլև ստուգում է և ապացուցում նրանց ճշմարտացիությունը տրամաբանական եղանակով: «Քանզի,— գրում է Իմաստասերը,—պարտ է ասել թէ ամենայն կենդանի այս, հինգ յեղանակաւն (զգայութեամբք—Կ. Մ.) վարի. ու այլ թէ տրամաբանօղ իմաստասէրն զամենայն ինչ հինգ յեղանակաւն ստուգէ»: Բանական ճանաչողությունն իմացության բարձրագույն ձևն է: Այն անմիջականորեն կապված չէ բանականությանը հասու իրերի աշխարհի հետ: Այս կապը միջնորդավորված է ավելի ցածր ձևերով, առաջին հերթին զգայություններով, քանզի «միտքն զգալեօքն շարժէ զգայութիւնսն, վասն որոյ և չգործէր միտքն զգայութիւնքն, նախ քան զզգալ»:

Զգայություններն իրենք, ի տարբերություն ճանաչողության մնացած ձևերի, չունեն նախորդող աստիճան, որովհետև «զգայութիւնքն եղեն չէր կարօտ զգալոյ, գունոց կամ ձայնից, որովք իբր անձրևով կերակրի»:

Այսպիսով, մարդկային իմացության հիմքը զգայական փորձն է: Բանական ճանաչողությունը խարսխվում է զգայականի վրա: Եթե բանականությունն անտեսում է զգայությունները, այն ընկնում է մոլորության մեջ և ի վիճակի չի լինում ճանաչելու ճշմարտությունն իր ողջ խորությամբ, որովհետև ոչ թե բանականությունն է զգայությունների պատճառը, այլ ընդհակառակը: Եթե, զգայությունները ճանաչողի զգայարանների վրա ճանաչելի օբյեկտի ունեցած անմիջական ներգործության արդյունք են, ապա բանականության նպատակն է իրերի աշխարհում գոյություն ունեցող պատճառական կապի, էությունների բացահայտումը, ինչպես նաև զգայական մշակումը, ընդհանրացումն ու որոշարկումը: Բանական ճանաչողության, ինչպես նաև ընդհանրապես գիտության նպատակն ու խնդիրը՝ ճանաչել իրերի ճշմարիտ էությունը, որովհետև «չէ պարտ որ ի ճշմարտութենէ արտաքոյ է քննել, այլ որ ի յարէ»:

Զգայությունները, առանց բանականության միջամտության, պասսիվ են: Նրանք իրենց «դռները» արտաքին աշխարհի առջև բացում են միայն բանականության թելադրանքով, քանզի բանականությունն իրեն է ենթարկում զգայարանների ու դրանց տվյալների բոլոր գործողությունները:

Օգտագործելով Արիստոտելի «զաւրութիւն» և «ներգործութիւն» կատեգորիաները, Իմաստասերը հետևյալ ձևով է մեկնաբանում Փիլոն Ալեքսանդրացու այն թեզը, թե «զգայությունը» ունի երկակի նշանակություն, ցույց տալով բանականության և զգայության ներքին փոխպայմանավորվածությունը «մին այն, որ ունակութեամբ էր ի զօրութիւն մտացն. և երկրորդ՝ որ երեկ յառաջ ներգործութեամբ»:

Եվ չնայած զգայությունների ստորադաս դիրքին, դրանք բանականության հետ գտնվում են որոշակի հարաբերության և կապի մեջ՝ կազմելով մի միասնություն: Այս հարաբերության մեջ որևէ կողմի անտեսումը հանգեցնում է դրանց գործողությունների անկանոնության, ճանաչողությունը շեղելով իր ճշմարիտ ուղուց: Այսպես, թեև այս միասնության մեջ գերիշխողը բանականությունն է, բայց վերջինիս դերի անչափ ուռճացումը հանգեցնում է հակառակ արդյունքների, քանզի «միտքն որչափ ի յինքեանէ և չէ ի զգալիսս, զգայութիւնքն հնազանդին նմա»:

Սակայն, Իմաստասերի կարծիքով, բնության մեջ գոյություն ունեն այնպիսի երևույթներ, որոնք անհասանելի են զգայական ընկալմանը և ճանաչվում են «հոգու աչքերն» հանդիսացող ինտելեկտի միջոցով:

Դրանով իսկ հերքվում է որոշ անտիկ մտածողների իմացաբանությունից սկիզբ առնող միտքն այն մասին, թե բանականության մեջ չկա ոչինչ, որ նախապես գոյություն ունեցած չլինի զգայություններում, գաղափար, որը նոր ժամանակներում առաջադրվեց Հելվեցիուսի կողմից: Այդ բացատրվում է նրանով, որ ըստ հայ մտածողի, գիտնականը «ոչ միայն սիրէ քննել զտեսակս և զորակս, այլ և զանտեսանկն և զանորակն»:

Սույն դրույթով Իմաստասերը չի հակասում իրեն և չի ժխտում զգայական պատկերացումների առաջնայնությունը: Քանզի տվյալ դեպքում խոսքն այն մասին է, որ մարդկային ինտելեկտը ի վիճակի է ընդհանրացնել, տրամաբանորեն վերամշակել ո՛չ միայն զգայական տվյալները, այլև նախկին ընդհանրացումների, եզրակացությունների և գիտելիքների արդյունքները, որոնք, հասկանալի է, արդեն օժտված չեն նյութական գոյությամբ և չեն ընկալվում զգայարանների միջոցով, այլ առընչվում են գիտակցության ոլորտին:

Ճանաչողության յուրաքանչյուր աստիճանում համապատասխանաբար օգտագործվում են այս կամ այն գիտական մեթոդները, որոնց շարքում նա առանձնահատուկ տեղ է հատկացնում «դիտարկմանը», «փորձին» և «բացատրությանը»: Ընդ որում, դիտարկումն ու փորձը առնչվում են զգայական, իսկ բացատրությունը՝ բանական ճանաչողության հետ:

Այսպիսով, զգայական ճանաչողությունը ուղղված է ճանաչելիի երևութական, արտաքին կողմի բացահայտմանը, իսկ բանականը՝ էության հետազոտությանը, որն անհասանելի է զգայություններին:

Իմացության աստիճանների պրոբլեմի հետ է կապված նաև մարդու ճանաչողական կարողությունների զարգացման՝ Իմաստասերի ըմբռնումը: Մանուկների զգայարաններն ավելի են հակված արտաքին գրգիռներին ռեակցիա տալուն: Նրանց երևակայությունը և միտքն ավելի ունակ են, քան մեծահասակներինը: Այդ պատճառով զգայական ընկալման և դատողականության ընդունակությունը մանուկների մոտ զարգանում է անհամեմատ արագ:

Այսպիսով, ճանաչողության զգայական և բանական աստիճաններն Իմաստասերը դիտում է իրենց միասնության և փոխպայմանավորվածության մեջ: Ու թեև նա ընդհանուր գծերով ճիշտ է պատկերացնում դրանց դիալեկտիկական կապը և փոխառնչությունը, սակայն նրա ըմբռնումը սահմանափակ է, քանզի որպես ճանաչողության սուբյեկտ մտածողի ուսմունքում, ինչպես ողջ մինչմարքսյան փիլիսոփայության մեջ, հանդես է գալիս ոչ թե հասարակական, այլ անհատական մարդը: Նա բարձր է գնահատում փիլիսոփայության դերը և նշանակությունը: Գիտական ուսումնասիրության մեթոդները և սկզբունքները նա չի դիտում իբրև մեկընդմիշտ տրված, «վասն զի յոլով են յեղանակք վարդապետութեան, որպէս ունի բանն, յորոց և ոչ զմի գոլ գտանել ի կարկատուն և յանհամ յայնպիսեացն բարբաջանս»:

Իմաստասերը պահանջում է, որպեսզի հետազոտության ժամանակ կիրառվի կոնկրետ— «պատմական» մոտեցում, քանզի յուրաքանչյուր փաստ կամ երևույթ, մանավանդ անցյալին վերաբերող, կարելի է ճիշտ բնութագրել և ճանաչել միայն ժամանակը, տեղը և այլ կոնկրետ պայմաններն ու հանգամանքներն հաշվի առնելով:

Իմաստասերի կարծիքով, գիտելիքը, որը ձեռք է բերվել ճանաչողության նախորդ փուլերում, ժամանակի ընթացքում չի կորցնում իր տեսական արժեքը: Ընդ որում, պարտադիր չէ, որ այն գործածվի իր անմիջական տեսքով և այդ չի նշանակում, թե այն չի ենթարկվում զարգացման ու փոփոխության: Անցյալի գիտելիքը գոյություն ունի «վերառված ձևով», հանդիսանալով ներկա գիտելիքի անհրաժեշտ բաղկացուցիչ մասը, այն հիմքը, որի վրա կառուցվում են ներկա ուսումնասիրությունները և տեսությունները: «Եւ այսպէս ոչինչ ունայնացեալ լինի ի գիտոց իմաստնոյն, և ըստ արուեստի քննողացն առաջնոյն: Իսկ զանայրուեստ և զանիմաստ ձեռնարկութիւնս ոմանց խոտեմք»,— գրում է մտածողը:

Ավելին, ներկան նաև ապագայում հավաստիություն ունեցող անցյալ սերունդների գիտելիքների ամրապնդման, գիտական հիմնավորման և ընդհանրացման մի շրջան է: Ելնելով գիտելիքի ժառանգորդման այսպիսի մեկնաբանությունից, Իմաստասերն իր միտքը տարածում է «անցյալի», «ներկայի» և «ապագայի» հասկացությունների վրա, պնդելով, թե «անցյալի» օգնությամբ ըմբռնելի և հասանելի է դառնում ո՛չ միայն ներկան, այլև ապագան: Ներկան յուրօրինակ մի կամուրջ է անցյալից ապագային անցնելու համար:

Որպես գիտնական, նա ձգտում էր ճշմարիտ դրույթների: Կարծիքը դեռևս գիտելիք չէ: Այն գիտելիքի է վերածվում, երբ ապացուցվում է նրա ճշմարտացիությունը: Գիտելիքը բնության պատճառահետևանքային կապի բացահայտման և բացատրության արդյունք է, որն իր հերթին գիտական հետազոտության նպատակն է: Իմաստասերը խստորեն սահմանազատում է «Ճշմարտությունը իրերի մեջ և ճշմարտությու-

նը բառերի մեջ», դրանով իսկ առաջ քաշելով ձևական-տրամաբանական և իմացաբանական (օբյեկտիվ) ճշմարտության հասկացությունը:

Մարդկային գիտելիքը հավերժական և բացարձակ չէ: Բացի այդ հավաստի թվացող ամեն մի դրույթ չէ, որ իրականում էլ այդպիսին է: «Թէպէտ իրն, և բան և անուանք,— գրում է Իմաստասերը,— յայնմ ժամանակի ոչ այսպէս և ըստ յայսմ ունէին: Բայց քանզի հանդիպի այժմուս և ի ճշմարտութեան մասինն՝ խոտելոյ արժանի ոչ եղաք, այլ ուղևորեալք ի կատարածէ ի սկիզբն կոյս»: Այստեղից հետևում է նաև, որ ճշմարտությունը ո՛չ միայն գիտական հետազոտության նպատակն է, այլև ճանաչողական հետագա գործունեության ելակետային տարրը:

Իմաստասերն արծարծում է հարաբերական և բացարձակ ճշմարտության գաղափարը, դրանց կապն ու առնչությունը: Յուրաքանչյուր ճշմարտություն, որին հասնում է ճանաչողը հետազոտության տվյալ փուլում, միաժամանակ և՛ բացարձակ, և՛ հարաբերական է: Նա հիմնականում ճիշտ է պատկերացնում դրանց փոխպայմանավորվածությունը՝ հարաբերական և բացարձակ ճշմարտությունները գոյություն ունեն ոչ թե միմյանցից անկախ, այլ կազմում են մի միասնություն: Դրանք միասնական ամբողջի (ճշմարտության) ներսում երկու բաղկացուցիչ տարրեր, կողմեր են, որոնք որոշակի հարաբերության մեջ են, և տարրերից մեկը գերակշռող է ու մատնանշում է ինքյան ճանաչողության ակտի վիճակը և մակարդակը: Բացի այդ յուրաքանչյուր հարաբերական ճշմարտություն պարունակում է բացարձակի մասնիկ և ընդհակառակը: Այսպես, «ըստ արուեստի և մակացութեան հնար է մերթ զնոյն ինքն ճշմարտութիւնն և մերթ մերձն առ ճշմարտութիւնն, և զայսոսիկ դարձեալ երկակի և կամ աւել և կամ սուղ գտանել»:

Գիտությունը և «արվեստը» միշտ չէ, որ կարողանում են վերահասու լինել ճշմարտությանը, որովհետև բնությունն իր մեջ թաքցնում է բազմաթիվ անհայտություններ: Այդ պատճառով էլ թեև մարդկային միտքն ուղղված է դեպի տիեզերքի գաղտնիքների իմացությանը, այնուամենայնիվ նա երբեք չի կարող լիովին սպառել դրանք: Ուստի «... սակաւ ինչ յայտնի երևի յիմաստնոյն խորհրդոցն, յոլովն այն է, որ ծածուկ է»:

Իմաստասերը տալիս է նաև «ակնհայտ» ճշմարտության գաղափարը: Սակայն վերջինը «ակնհայտ է» ոչ թե ինքնըստինքյան, այլ այնքանով, որքանով գիտուն մարդիկ կարող են ընդունել այս կամ այն թեզը առանց լրացուցիչ հիմնավորման և ակնառու օրինակի: Այդ ճշմարտությունը «պարզորոշ է», «հայտնի է», որովհետև հիմնված է գիտության նախորդ նվաճումների վրա:

Հետևաբար պետք չէ գիտականորեն հիմնավորված ամեն մի միտք վերստին ապացուցել, բայց անհրաժեշտ է՝ ելնելով դրանցից հիմնավորել այնպիսի գաղափարներ, որոնք տակավին չեն ընդունել «ակնհայտության» տեսք: Սրանով իսկ նա առաջադրում է ինդուկտիվ մեթոդը, որը նրա մոտ երևան է գալիս դեռևս ընդհանուր գծերով:

Գիտելիքի միակ և անփոխարինելի չափանիշը, իմաստասերի կարծիքով, փորձն է: Նա առաջիններից էր, եթե ոչ առաջինը, որը խոր միջնադարում հռչակեց գիտելիքի փորձնական ստուգման սկզբունքը: Հայ մտածողը համոզված է, որ յուրաքանչյուր գիտական դրույթ անհրաժեշտորեն պիտի ենթարկվի փորձնական ստուգման: Նա գրում է. «Դարձեալ թէ և սոքիք կիրթ և վարժ, առանց փորձի՝ կարծիքն հաւատարմանալ ոչ կարասցեն. և փորձն՝ հաստատուն և աներկբայ—վասն զի ոչ է պարտ միայն հնագիտակ լինել, այլ և ինքնաբաւ»:

Փորձնական ստուգումը ենթադրում է բառհասկացության և իրի համապատասխանությունը: Այս հարցում դրսևորվում է Իմաստասերի նոմինալիստական մտածողությունը: Ըստ այդմ ոչ թե իրն է պայմանավորված հասկացությամբ, այլ հասկացությունն անհրաժեշտաբար պետք է համապատասխանի իրին, քանի որ, ինչպես կփորձենք ցույց տալ, Իմաստասերի ուսմունքում հասկացությունն արտահայտում է իրերի և երևույթների էությունը: Այսպես. «ոչ է պարտ հայել ի բանիցն շաղակրատանս, թէպէտ և հաւանական թուեսցի: Քանզի բանն նշանակիչ իրին է չէ իրաւացի հակառակ իրացն արտաբերիլ: Այլ միայն ճշմարտութեան հետևել»: Սակայն Իմաստասերը չի անտեսում նաև հասկացությունների նշանակությունը, որն, իր կարծիքով, իրերի իսկական էության ճշմարիտ արտացոլման մեջ է: Ամեն մի հասկացություն չէ, որ արտահայտում է իրի էությունը, որովհետև գոյություն ունեն նաև այնպիսի հասկացություններ, որոնք «որպէս յարալեզն և եղջերուաքաղն, բանք միայն են, և ոչ էութիւն»: Բայց եթե հասկացությունը չի արտացոլում առարկայի էությունը, դրանից ինքը՝ էությունը չի տուժում և չի փոխվում, որովհետև այն անկախ է և առաջնային իրեն արտացոլող հասկացությունների նկատմամբ: «Այլ զի՞նչ ազգուտ բերէ բանիւն,— գրում է Իմաստասերը,— ոչ ասիլ իրին հաստատապէս կացելոյ, քանզի եթէ ասէ բան և եթէ ոչ, իրն անսխալ ունի զիւրութեանն իւրոյ յատկութիւն»:



Թեև այս կամ այն իրի և երևույթի անվան կամ գիտական հասկացությունների փոփոխությունը չի աղավաղում նրանց էությունը, բայց խոչընդոտում է ճշմարիտ ճանաչողությունը, «երկրաչափքն թէ փոխեն զկէտին անունն և զգծին, և զայլոցն, այլ ոչ կարեն զբնութիւն իրին ցուցանել»:

Այսպիսով, որպես ճշմարտության չափանիշ (բառի լայն իմաստով) հանդես է գալիս կոնկրետ-զգայական նյութական իրերի և երևույթների աշխարհը: Սակայն փորձի դերը չի սահմանափակվում սոսկ գիտելիքի ստուգմամբ, այլ միաժամանակ հիմք է հանդիսանում բացահայտելու համար նոր էություններ, բայց արդեն այլ, ավելի բարձր մակարդակում: Այսինքն «փորձ» հասկացությունը Իմաստասերի մոտ ստանում է նաև ճանաչողական գործունեության անհրաժեշտ բաղկացուցիչ տարրի նշանակություն, որի միջոցով ապահովվում է գիտելիքների անմիջական կապը իմացության օբյեկտի հետ:

Այդ հնարավոր է դառնում այն պատճառով, որ ըստ Իմաստասերի բնական համակարգի բոլոր օղակները փոխկապակցված և փոխպայմանավորված են, մեկը վերածվում է մյուսին և, հետևաբար, մի իրի ճանաչողությունը կապված է այլ իրերի իմացության հետ և ընդհակառակը: Այսինքն ճանաչողությունն անընդհատ պրոցես է, որտեղ հետազոտության մի փուլի ավարտը հանդիսանում է մի այլ փուլի սկիզբը:

Իմաստասերի համար փորձն անմիջական գիտելիք է: Նա դեռևս ի վիճակի չէ փորձի մեջ տեսնել անմիջական և միջնորդավորված գիտելիքի միասնությունը, քանզի փորձնական գիտությունը այդ դարաշրջանում տակավին ամբողջապես դուրս չէր եկել աշխարհի և նրա ճանաչողության անմիջական ընկալման սահմաններից: «Պրակտիկան», որը Իմաստասերի ուսմունքում նույնական է մի շարք այլ հասկացությունների («աշխատանք», «կենսափորձ», «փորձ» որպես ճանաչողության մեթոդ և որպես չափանիշ), մարդկային (անհատական) գործունեության այն ոլորտն է, ուր իրենց «գրանցումն են» ստանում գիտելիքները: Այն ճանաչողության հիմքն է, որի միջոցով են ստուգվում հետազոտության արդյունքները, որտեղ և, վերջապես, օգտագործվում են ստացված գիտելիքները:

Ավելին, արտաքին նյութական աշխարհի ճանաչողությունը, դրա զարգացման ուղիների բացահայտումը և բացատրությունը ուժ են ներարկում մարդուն, նրան վստահություն են ներշնչում իր բանականության և հնարավորությունների նկատմամբ՝ բնության տարերային ուժերի դեմ պայքարում: Չճանաչված իրը, անգիտությունը՝ բնության և երկնքի ծածուկ ուժերի առաջ մարդկային սարսափի պատճառն են:

Ինչպես կարելի է նկատել, «փորձ հասկացության մեկնաբանությունը բաժանել է» ոչ միայն «կլասիկ մատերիալիստներին և իդեալիստներին»: Տվյալ միտքը ամբողջ փիլիսոփայության պատմության, իսկ որոշ վերապահություններով նաև միջնադարյան փիլիսոփայության համար մեթոդաբանական սկզբունք է՝ չնայած այն հանգամանքին, որ միջնադարում չեն ստեղծվել հետևողական մատերիալիստական ուսմունքներ:

Հայ միջնադարյան փիլիսոփայության մեջ ևս փորձի և ընդհանուր հասկացությունների պրոբլեմը երևան եկավ ճանաչողական գործունեության պրոցեսում բանականության և զգայությունների տվյալների փոխհարաբերության համեմատական արժեքավորման ավելի լայն հարցի լուծման առնչությամբ:

Ինչպես կարելի էր համոզվել, իմացաբանության հարցերում առանձնապես ակնհայտորեն է դրսևորվում մտածողի հաճախ մատերիալիզմի վերաճող սենսուալիզմը: Իմաստասերի հայացքների արժույթն այն է, որ իմացաբանական հիմնական հարցը, այսինքն՝ բնության և մտածողության հարաբերակցության հարցը, նա լուծում է մատերիալիստորեն, ընդունում է օբյեկտիվ իրականության ճանաչողությունը: Նրա նշված և այլ մատերիալիստական դրույթները նշանակալի դեր խաղացին հայ փիլիսոփայական մտքի հետագա զարգացման գործում:

---

# ՃԱՆԱՉՎԱԾ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

ՅՈՒ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ԿԱՆԳՆԱԾ ԵՆՔ ԲԱՐՁՈՒՆՔԻ ՎՐԱ, որտեղից Չինչինն ասես ափիդ մեջ է: Ոչ մեծ, գողտրիկ մի գյուղ: Ասես պատկեր է՝ լեռներով գոտևորված: Ինչպես ամֆիթատրոնում, գեղեցիկ տներն են՝ տուֆի տարբեր երանգներով, պտղատու այգիները, կոլտնտեսային դաշտերի ոսկեղեն հատվածները: Անշուշտ, այսօր խուլ տեղ չես համարի մեծ կենտրոններից հեռու այս գյուղը: Չինչինցիների պահանջները, ճաշակը նույնն են, ինչ քաղաքացիներինը: Նրանց տանիքներում հեռուստաանտենաներն են, ամեն հինգերորդ ընտանիքը ավտոմեքենա ունի: Մարդիկ ունևոր են, լավ իրազեկ աշխարհի իրադարձություններին: Հովիվ Հովսեփը նույնիսկ դեն է նետել յափնջին. առանց տրանզիստորի ո՛չ մի քայլ:

— Ահա այստեղ մենք պաշտպանական կռիվներ ենք մղել,— հիշում է 1920 թվականից ՍՄԿԿ անդամ Վահան Ադամյանը Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղած կռիվների հեռավոր օրերի մասին:— Այն ժամանակ գյուղը վերևից նման էր համատարած կավե զանգվածի: Ծռմռված կավածեփ խրճիթները հրաշքով էին կպչած մնում զառիթափ ժայռերին: Հորդառատ անձրև տեղաց, շատ տներ հեղեղը սրբեց-տարավ: Մարդիկ չէ թե ապրում, խղճուկ գոյություն էին քարշ տալիս: Ոչ թե հիմիկվա պես: Տեսնում եք՝ ինչպիսի՜ ապարանքներ են կառուցել:

— Քո զավակներն ու թոռներն էլ ապարանքներում են ապրում, հայրի՛կ,— ժպտում է Խորեն Վահանովիչը,— ինքդ ես այդ կամեցել:

— Թող որ ավելի լավ ապրեն: Ձեզ համար ենք հեղափոխություն արել:

Կուսակցության վետերանը յոթանասունհինգ թոռ ու ծոռ ունի այսօր: Նրանցից տասնյոթը բարձրագույն կրթություն ունեն: Ահա ինչու Վահան պապն իրեն համարում է մոլորակի ամենահարուստ և ամենաերջանիկ մարդը: Ադամյանների դինաստիայի ներկայացուցիչներն աշխատում են Հայաստանի բոլոր մասերում: Չինչինում նրա հետ մնացել են Խորենը, հարս Վարդուշը և նրանց փոքր որդին՝ վերջերս բանակից վերադարձած Ավետիքը:

— Լավ չէ, իհարկե, որ երեխաները ցրվել են աշխարհով մեկ: Սակայն, մյուս կողմից, ի՞նչ տարբերություն՝ որտե՛ղ կապրեն ու կաշխատեն: Կարևորը արածիդ հավատալն է: Ահա Խորենս, սարեր է տեղից շարժում: Եվ մարդիկ դրա համար շնորհակալ են նրանից:

Հոր անկեղծությունն ամենևին էլ ծնողական կանխակարծություն չէ: Ծամշադինի շրջանի Չինչին գյուղի կոլտնտեսության նախագահ Խորեն Ադամյանի մասին ոգևորությամբ են խոսում ամենուր— և՛ կուսակցության շրջկոմում, և՛ գյուղատնտեսության մինիստրությունում, և՛ հանրապետության պետպլանում: «Զարմանալի մարդ է,— ասում են:— Եթե տնտեսությանը որևէ բան է պետք, գետնի տակից էլ կճարի: Նա և՛ ագրոնոմ է, և՛ սելեկցիոներ, և՛ աշխղեկ, և՛ նախագծող... Որ լսի, թե որևէ տեղ հետաքրքրական փորձ կա, անպայման կգնա, կուսումնասիրի, կներդնի իր կոլտնտեսությունում: Ստեղծագործողի խառնվածք ունի նա, անդադրում, համարձակ, նախաձեռնող»:

Ահա, վերջապես, հանդիպեցի նրան: Թավ հոնքերի տակից ինձ է նայում հարցասեր հայացքով: Մի փոքր խորամանկ, բայց և շիտակ է այդ հայացքը: Գրավիչ են արևից այրված դեմքի դիմագծերը: Ամրակազմ է, մկանուտ, մարզիկի կազմվածքով. հիսունյոթ տարեկան է և շատ ջահել է երևում իր տարիքից: Արտիստիկ, ձայնի կատակախառն տոնով հիշում է, թե ինչպես դեռ վերջերս և՛ գյուղում, և՛ շրջանային գյուղվարչությունում զայրանում էին նրա արածների վրա:

— Ուրեմն, որոշեցի ճագարաբուծական ֆերմա ստեղծել: Գործը նոր էր, բնականաբար՝ դժվարին: Թե ի՞նչ էր կատարվում, պատկերացնել չեք կարող: Անցնում եմ գյուղով, իսկ հետևիցս՝ «ճագա՜ր»:

Ջրուցակիցս վարակիչ ծիծաղում է: Անշուշտ, այսօր նա արդեն ուրախ է. դժվարությունները հետևում են, մարդիկ համոզվել են, որ ինքն իրավացի էր: Իսկ այն ժամանակ՝ չորս տարի առաջ, նյարդերը ծայր աստիճան լարված էին:

Խորեն Ադամյանին նախագահ ընտրեցին 1973 թվականի մայիսին: Տնտեսության բալանսում առավելապես բացասական ցուցանիշներ էին: Բնական պայմաններն անբարենպաստ են, վարելահողերը՝ ընդամենը 380 հեկտար: Երիտասարդությունը փախչում էր գյուղից, զգացվում է աշխատուժի պակաս: Թևքերը քրշտելով՝ Ադամյանը գործի կպավ: Իսկ տնտեսությունը բազմաճյուղ է. և՛ մրգեր պետք էր ստանալ, և՛ ծխախոտ մշակել, և՛ կեր, և՛ հացահատիկ: Եվ այդ ամենը՝ աննշան քանակությամբ: Անասնաբուծական արտադրանքի իններորդ հնգամյակի պլանը կոլտնտեսությունը դժվարությամբ կատարեց: Բանի նմա՞ն է՝ ֆերմայում ընդամենը 220 կով: Նոր, տասներորդ հնգամյակում նախագահի գլխում միտք ծագեց. զարգացնել ճագարաբուծությունը: Գնաց Ղրիմի «Ուկրաինա» կոլտնտեսությունը, եղավ Թաթարիայում, Վրաստանի Մառնեուլի շրջանում և համոզվեց, որ փոքր ծախսերով կարելի է զգալի շահույթ ստանալ:

Ռիսկի դիմեց. գնեց «սովետական շինշիլա» ցեղի 130 մայր ճագար և սկսեց պահել դրանք բաց պայմաններում: Հենց այդ ժամանակ էլ գյուղը հարձակվեց նախագահի վրա. Ադամյանը, իբր, խելքը թռցրել է, կովը փոխում է ճագարով:

Ինչպես էլ համոզում էր մարդկանց, թե գործը հեռանկարային է, լսել չէին ուզում: Նախագահը հասկացավ, որ համառ լեռնցիներին կարող է համոզել միայն աչքով տեսածը: Եկավ Երևան, տակնուվրա արեց կինոպրոկատի ողջ ունեցած-չունեցածը, մինչև գտավ Կրասնոդարի ճագարաբույծների փորձին վերաբերող վավերագրական մի ժապավեն:

— Կինոնկարն ավարտվեց,— հիշում է նախագահը,— իսկ մարդիկ չեն ցրվում: Մեկ էլ տեղից լսում եմ հորս ձայնը. «Ա՜յ, թե որ մենք էլ ունենայինք այդպիսի ֆերմա... Դա արդեն ուրի՜շ բան է»: Տեսա՝ անվստահության սառույցը վերջապես սկսեց հալվել: Վեր կացա ու հայտարարեցի, որ ֆերման մեզ մոտ ավելի լավը կլինի: 1976 թվականի հուլիսն էր: Սկսվել էր հնգամյակը: Ըստ տարիների նախատեսված էին բոլոր կառույցները: Բայց ես մարդկանց խոստացել էի: Պետք է կատարեի խոստումս:

Նախագահը եղավ գյուղատնտեսության մինիստր Հ. Թարջումանյանի մոտ: Նա հավանություն տվեց հետաքրքրական մտահղացմանը: Հանրապետությունում մինչ այդ ճագարաբուծական կոմպլեքս չէր եղել: Պայմանավորվեցին առայժմ նախագծել կոլտնտեսության միջոցների հաշվին: Հինգ ամիս էլ չանցած, Ադամյանը աշխատանքների պատրաստի նախագծերով կրկին եկավ մինիստրի մոտ... Եվ երկու տարի անց Չինչինի սարալանջում ստեղծվեց ժամանակակից կոմպլեքս՝ 3.000 մայր ճագարի համար: Տասնմեկ լուսավոր մասնաշենք՝ արդյունաբերական հիմունքներով:

Հաճելի է այսօր անցնել ֆերմայի մոտով: Շուրջը պտղատու այգիներ են, բարեկարգված է ողջ տարածությունը: Գազոններում վարդեր են, քրիզանտեմներ, մեխակներ: Խորեն Ադամյանն այդ ծաղիկները հայթայթել է բուսաբուծության ինստիտուտից:

Նրա հետ մեկտեղ դիտում եմ ջրավազանը, մորթու վերամշակման լաբորատորիան, անասնաբուժական կետը, ախտահանման շինությունը և ժամանակակից ճաշարանը՝ սպասարկող անձնակազմի համար: Պայմաններն այնպիսին են, որ դպրոցի ամեն մի շրջանավարտ երազում է աշխատել այդ ֆերմայում:

Չինչինցիներն արդեն պետությանն են վաճառել 35 տոննա ընտիր միս: Մինչև տարվա վերջ կստանան ևս 20 տոննա, իսկ հետագայում արդեն՝ կրկնակի:

— Շուտով կգործարկվեն բոլոր կարողությունները,— ասում է Խորեն Ադամյանը:— Միայն կարի արհեստանոցի ամենամյա եկամուտը կհասնի 200 հազար ռուբլու, այն կթողարկի ականջակալներով մանկական գլխարկներ. ավելացրեք դրան նաև ճագարի մսի վաճառքից ստացվող 400 հազար ռուբլին և տեսեք, թե որքա՜ն ենք շահում...

Բայց նախագահը չհանգստացավ. սկսեց որոնել ֆերմայի արդյունավետության բարձրացման ուղիներ: «Գրանցեց» այստեղ 200 գլուխ ճահճակուղբ և 60 արծաթասև աղվես. փորձարկում է: Խորենը խորհում է, որ սակավահող տնտեսության, ողջ հանրապետության համար այս միջոցառումը հեռանկարային է էկոնոմիկայի զարգացման առումով:

Հետաքրքրական մի հանգամանք. գյուղացիները, որ դեռ վերջերս զարմանում էին նախագահի արածներով, այժմ հանույքով ճագարներ են աճեցնում, սեփական տնտեսություններում: Ստեղծված է ճագարաբույծների ընկերություն, որի ակտիվ անդամներից է և շրջանային գյուղվարչության պետ Ա. Ղարիբյանը:

— Եթե վաղն ինձ ասեն, թե Խորեն Վահանովիչը եգիպտացորեն է ցանել անանցանելի սարալանջերում, կհավատամ: Ասեն սարագագաթներին պտղատու այգիներ է գցել, կասեմ ճիշտ է: Եթե նա որևէ բան մտքին դնի, անպայման կհասնի: Նրա բնավորության մեջ կա

մի բան, որ կարելի է կոչել բանական համառություն:

Կյանքում ոչինչ ապարդյուն չի անցնում: Լինել ամենքից առաջ, տանել մարդկանց իր հետևից. այդպիսին է եղել Խորենը դեռ պատանեկությունից: Տասնյոթամյա տղա էր, երբ կամավոր գնաց՝ կռվելու սպիտակ ֆինների դեմ: 43 թվականին զինվորագրվեց կոմունիստական կուսակցությանը: Հետո, չնայած վիրավոր, հասավ Բեռլին: Վերադարձավ գյուղ. շրջկոմի ուղեգրով մեկնեց սովորելու գյուղատնտեսության ղեկավար կադրերի պատրաստման եռամյա կուրսերում: Դարձավ նախագահ: Բայց միշտ ձգտում էր հարստացնել իր գիտելիքները: Որոշեց ընդունվել գյուղատնտեսական ինստիտուտ: Ավարտեց և մնաց Երևանում...

— Լավ է առաջինը լինել գյուղում, քան վերջինը՝ քաղաքում,— հանդիպելով որդուն՝ կշտամբեց հայրը:

Հոր խոսքն ազդեց: Խորենը վերադարձավ հարազատ վայրերը: Կրկին ոգեշնչվեց:

Քայլում ենք նրա հետ Չինչինի փողոցներով: Վեր են բարձրացել կուլտուրայի տան, դպրոցի, խանութի նորակերտ շենքերը: Գյուղն այժմ կառուցվում է գլխավոր պլանով, ուղիղ շարքերով:

— Մանուկների համար ուզում ենք լողավազան կառուցել, մանկական գեղագիտական կենտրոն,— ապագա պլաններին է ծանոթացնում նախագահը,— նորապսակները պետք է համոզված լինեն, որ մեզ մոտ ևս՝ յոթ սարից այն կողմ, կյանքն աղբյուրի պես հորդում է, ինչպես մեծ քաղաքում: Ինքներդ էլ գիտեք. տնտեսությունը նուրբ բան է: Որպեսզի ոչ մի տեղ ոչինչ չընդհատվի, պետք է համաքայլ ընթանալ մարդկանց, նրանց աճող կուլտուրական պահանջների հետ:

Հետո, արդեն ընտանեկան օջախում ցույց տալով իր մեծ զավակների լուսանկարները, ներքին հպարտությամբ նա կպատմի նրանցից յուրաքանչյուրի մասին. Անժելան պատրաստվում է պաշտպանելու թեկնածուական դիսերտացիան՝ խաղողի ցրտադիմացկուն սորտերի վերաբերյալ. Արմանուշը բժշկուհի է, Վերգինեն՝ քիմիկ-ինժեներ, Անդրանիկը՝ օդաչու: Նրանք ունեն իրենց ընտանիքները, իրենց ուրախությունները ու հոգսերը:

— Ծուտով թոռներս ու ծոռներս արձակուրդ կգան,— ուրախանում է ավագ Ադամյանը.— Նրանց անպայման ցույց կտաս ֆերման, Խորե՛ն: Մեկ էլ տեսար՝ դուր եկավ նրանց, մեկն ու մեկը ցանկացավ մնալ մեզ մոտ: Չէ՞ որ քաղաքում ոչ ոք չգիտե նրանց: Իսկ շրջանում մեր գերդաստանը հայտնի է: Մենք Ադամյաններն ենք:




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 08684 Պատվեր 2540 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 11/XI-1979 թ.*




## Նոր գրքեր

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: Հ. 22: *«Հայաստան» հրատ., 1979:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: Հ. 23: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ա. ԵՐՅՈՄԵՆԿՈ— Հատուցման տարիներ (1943—1945): *«Հայաստան» հրատ., 1979:*

Է. ԻՎԱՆՅԱՆ— Սպիտակ տուն. Պրեզիդենտներ և քաղաքականություն: *«Հայաստան» հրատ., 1979:*

Պ. ԺԻԼԻՆ— Նապոլեոնյան բանակի կործանումը Ռուսաստանում: *«Հայաստան» հրատ., 1979:*

Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ ու ժողովուրդներ— X— *Թուրքիա: Ե., ԳԱ հրատ., 1979:*

Հ. ԽՏՐՅԱՆ— Կոմունիստական բարոյականության ուղենիշներով: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ— Գարեգին Նժդեհ: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ռ. ՀԱՄԲԱՐՅԱՆ— Հավատի հենքը: Ակնարկներ: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ալ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Հայոց լեզվի հապավումների բառարան: *«Հայաստան» հրատ., 1979:*

**Идейный арсенал коммунистов.** 2-е изд. доп. М., Политиздат, 1979.

В. КАСЬЯНЕНКО — **Роль КПСС в формировании социалистического образа жизни.** М., Политиздат, 1979.

Э. ХОНЕККЕР — **Избранное.** Речи и статьи. (1971—1978 гг.). М., Политиздат, 1979.

А. ВЛАДИМИР — **Правда о неправде.** Критические очерки по империалистической антисоветской пропаганде 70-х годов. М., Политиздат, 1979.

Ф. ЕРМАШ — **Экран революции.** Киноискусство в художественной культуре советского общества. М., Политиздат, 1979.

**История дипломатии.** Т. 5. В 2-х книгах. Книга 2. М., Политиздат, 1979.

**Активная жизненная позиция борцов за коммунизм.** По материалам Всесоюзной научно-практической конференции в Баку (25—27 апреля 1979 г.). М., Политиздат, 1979.

В. ШАПОВАЛОВ — **Образец для всей страны.** М., Политиздат, 1979.

Л. АБРАМЯН — **Кант и проблема знания.** Анализ кантовой концепции обоснования естествознания. Е., изд. АН, 1979.

А. ГЕВОРКЯН — **Философский анализ революции в физике.** Е., изд. АН, 1979.

К. ХЕЕРМАН — **Джи-мены из ФБР: их темные дела.** (Пер. с нем.). М., Политиздат, 1979.

П. БЕРАР — **Религия в современном мире.** (Пер. с рум.). М., Политиздат, 1979.

Ю. МАТЕВОСОВ — **Наука и производство.** Е., изд. АН, 1979.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀՈՍՈՂ ՋՐԵՐԻ ՄԱՔՐՈՒՄԸ ԳՈԼՈՐՇԻԱՑՄԱՄԲ

Ստավրոպոլի պոլիտեխնիկական ինստիտուտի գիտահետազոտական սեկտորի աշխատակիցները սև և գունավոր մետաղներ մշակող գործարաններից արտահոսող թունավոր ջրերի մաքրման նպատակով առաջարկել են փակ ջրամատակարարման հատուկ սիստեմ, որտեղ արտահոսող ջրերը մաքրվում են գոլորշիացման սարքերում, ապա կրկին հոսում դեպի տեխնոլոգիական գիծը։ Հոսող ջրերից արտածված նյութը աղերի չոր խառնուրդ է, որը կարելի է օգտագործել շինանյութերի արտադրության մեջ։

Գործարաններում անցկացված փորձարկումները ցույց տվեցին, որ մաքրման առաջարկված սիստեմը հնարավորություն է ընձեռում լրիվ բացառելու շրջակա միջավայրի աղտոտումը հոսող ջրերով և զգալիորեն կրճատելու խմելու ջրի օգտագործումը մետալուրգիական ձեռնարկություններում։

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՄԵԹՈԴ

Լենինգրադի մասնագետներն առաջարկել են ծովում նավթի տարածումը վերացնել ինքնաթիռով ծովի վրա քիմիկատներ թափելու միջոցով։ Այդ նպատակի համար նախատեսվում է օգտագործել ոչ թունավոր բաղադրություններ, որոնք լավ լուծվում են նավթի մեջ՝ թանձրացնելով այն։ Բալթիկայում կատարված փորձարկումները հաստատեցին այդ մեթոդի արդյունավետությունը։

## ԳԱԶ՝ ԾՈՎԻՑ

Բաքվի ծովային նավթահանքերում վեց հազար մետր խորության վրա հետախուզական հորատանցքում բացվել է բնական գազի արդյունաբեր շերտ։ Գազախողովակի մայրուղուն միացված հորատանցքի օրական դեբիտը 1,3 միլիոն խորանարդ մետր վառելիք է։ Այսպիսով, հաստատվեց երկրաբանների կանխատեսումները մեծ խորությունների վրա նավթի ու գազի որոնումների հեռանկարայնության վերաբերյալ։ Այժմ Կասպից ծովի կեսից ավելի հորատանցքերը փորում են 5—6 կմ խորությամբ։ Հետախուզական աշխատանքները կատարվում են լողացող սարքերով։

## ՆՈՐ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

Չեխոսլովակիայի գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտի և մոլեկուլային գենետիկայի ինստիտուտի գիտնականներն ստեղծել են օպտիկական նոր մանրադիտակ, որն առավելագույնս հարմարեցված է կենդանի հյուսվածքների ուսումնասիրմանը։

Չեխական նոր հայտնագործությունը հնարավորություն է ընձեռում մեկ մանրադիտակի օգնությամբ միանգամից ըստանալու ուսումնասիրվող երկու տարբեր հյուսվածքների մակերեսների և խոր շերտերի երկու պատկերներ։ Երկու պատկերն էլ մեծացված են հազար անգամ։ Դրանք կարելի է տեսնել հեռացույցի էկրանին, անմիջապես դիտել ակնապակու վրա, լուսանկարել կամ հանել կինոժապավենի վրա։ Եթե դիտվում են ինչ-որ երկարատև պրոցեսներ, օրինակ՝ հյուսվածքների բաժանում կամ աճ, ապա աշխատանքը կարելի է ավտոմատացնել։ Դրա համար մանրադիտակին միացվում է «Тесла ИПР—12» հաշվիչ փոքր մեքենան։

## ՇԵՆՔԸ ՏԱՔԱՑՆՈՒՄ Է ԿՈՄՊՅՈՒՏԵՐԸ

Լուցեռնում (Շվեյցարիա) կառուցել են ծառայողական շենք, որը ջեռուցվում է ԷՀՄ-ի աշխատանքի ընթացքում առաջացած ջերմությամբ։ Ինժեներները սովորաբար մեծ ջանքեր են գործադրում այդ ջերմությունն արտածելու և ցրելու համար։ Նոր շենքում ԷՀՄ-երի աշխատանքի ընթացքում առաջացած ջերմությունը ծառայում է ո՛չ միայն շինությունների, այլև ստորգետնյա գարաժների տաքացման համար։

Ջերմություն կլանող ու բաշխող ագրեգատները թեև բավական թանկ են, սակայն հաշվարկները ցույց են տվել, որ մեկ տարում կտնտեսվեն 180 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և սառեցման համար պահանջվող 12 հազար լիտր ջուր։